# ՊԻՈՆԵՐ

ԿԵՑՑԷ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՊԻՈՆԵՐԻԱՆ
LONG LIVE THE PIONEERYA OF ALL THE WORLD



ՄԱՅԻՍ
№ 2-3
1927




ՖԱՇԻՍՏ



# ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԵՔՍԿՈՒՐՍԻԱՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Արդեն սկսվել է պիոներական եքսկուրսիաների շրջանը։ Պիոներները, կարմիր փողկապները կապած, ճամբորդական պայուսակները մեջքերին, թմբուկի հարվածների տակ, մեկնում են քաղաքից դուրս, դեպի մոտիկ բլրակը, դաշտը, ուր օդը մաքուր է և չորս կողմը կանաչ։

Սակայն չպիտի մոռանալ, որ մեզանից յուրաքանչյուրը, ով գնում է եքսկուրսիա, պիտի լավ պատկերացնի իրեն, թե ուր է գնում, ինչ նպատակով և այլն։ Այդ իմանալուց հետո, հարկավոր է կոլլեկտիվով, ողակով նախապատրաստվել։

Եքսկուրսիա գնալիս, ամենից առաջ պիտի պարզել՝ թե

### ԻՆՉԻ՞ ՀԱՄԱՐ

ենք գնում, այսինքն—նպատակը։ Պետք է ասել, որ տարբեր եքսկուրսիաներ են լինում։ Կազմակերպվում են եքսկուրսիաներ զվարճանալու, թարմանալու նպատակով։ Լինում են եքսկուրսիաներ, որոնց միջոցով ծանոթանում են շրջապատի բնության հետ, ուսումնասիրում են գործարանների ու հանքերի աշխատանքը, թանգարանները և այլն։ Բացի դրանից, կատարում են, յերկարատև եքսկուրսիաներ, 2—3 օրով, դեպի գյուղ, գյուղի և այնտեղ յեղած պիոներական կոլլեկտիվի հետ կապվելու նպատակով։

Եքսկուրսիա գնալիս, հարկավոր է նախորոք վորոշել, թե այդ եքսկուրսիան ինչ բնույթ է ունենալու։ Յեթե, օրինակ, գնալու յենենք 2—3 օրով գյուղ, այն ժամանակ հարկավոր է մտածել գիշերելու մասին, պիտի ծրագրել այն աշխատանքները, որ կատարելու յենք գյուղում և այլն։ Մեզ մոտ դեռ կան կոլլեկտիվներ, վորոնք այդպես չեն անում։ Մեկ էլ տեսար, պիոներատան պատին փակցվեց՝

> **ՀԱՅՏԱՐԱՐՈՒԹՅՈՒՆ**
>
> «Աթարբեկանի» անվան կոլլեկտիվի բոլոր պիոներները, վաղը, առավոտյան ուղիղ ժ. 7 ին, լինեն հրապարակում
>
> **ԵՔՍԿՈՒՐՍԻԱ**
>
> գնալու համար։
>
> Բոլորի ներկայությունը պարտադիր է.
>
> Զուշաճայլ
>
> **ԿՈԼԽՈՐՀՈՒՐԴ**

Առավոտյան, իհարկե, վոչ թե ժամը 7-ին, այլ 8 և կեսին պիոներների մեծ մասն արդեն հավաքված եր։ Սպասում եյին թմբկահարին։ Նրա գալուն պես լսվեց կոլվարի ձայնը.

— Զգա՛ստ, քայ-լո՛վ մա՛րշ...

Բոլորը շարժվեցին, բայց դեպի ուր, ինչի համար... Դրա մասին պիոներների մեծ մասը չգիտեր։ Ճանապարհին, յերբ փոքր ինչ հոգնածություն զգացին, սկսեցին հարց ու փորձ անել միմիանց, թե

### Ո՞ՒՐ ԵՆՔ ԳՆՈՒՄ

յերկար ու բարակ.

— Լավ, ես ա կհասնենք, կիմանանք ելի, քիչա ա մնացել,—լսվում է ողակավարներից մեկի պատասխանը։

Մեր կոլլեկտիվները, ողակները պետք է խուսափեն նման եքսկուրսիաներ կազմակերպելուց։

Եքսկուրսիայի նպատակը պարզելուց հետո, հարկավոր է նաև վորոշել տեղը, նախորոք հայտնել պիոներներին դրա մասին, վորպեսզի նրանք էլ իրենց հերթին հայտնեն իրենց, ծնողներին, ուտելու պաշար բերեն իրենց հետ և այլն։ Պետք է աշխատել այնպիսի տեղ գնալ, վոր կարելի լինի պաշտպանվել արևի այրող ճառագայթներից, ջուրը մոտիկ լինի, ճանապարհը դժվար ու քարքարոտ չլինի և, ամենագլխավորը, եքսկուրսիայի համար պիտի ընտրել այնպիսի տեղ, վորը շատ հեռու չլինի։

Պարզեցինք եքսկուրսիայի նպատակը, տեղի խնդիրը, բայց դա դեռ բոլորը չէ, հարկավոր է իմանալ՝ թե

### ԻՆՉՊԵ՞Ս ՊԵՏՔ Է ԱՆՑԿԱՑՆԵԼ ԵՔՍԿՈՒՐՍԻԱՆ, ԶԲՈՍԱՆՔԸ

Ամեն մի եքսկուրսիայից առաջ հարկավոր է ծրագրել, թե ինչ պետք է անել այնտեղ, ինչ խաղեր խաղալ, գյուղում ինչ անել և այլն։ Բացի այդ, հարկավոր է աշխատանքի բաժանում կատարել, տալով յուրաքանչյուր ողակին առանձին խնդիրներ։ Ամենագլխավորը, այնպես պետք է անել, վոր եքսկուրսիան ձանձրալի չլինի պիոներների համար։

Պատահում է, վոր առանց մտածելու և ծրագրելու, գնում ենք եքսկուրսիա։ Դեռ տեղը չհասած, ինչ վոր բերել ենք ուտում ենք, միքիչ ուռա՛, ղալմաղալ սարքում և վերադառնում հոգնած, ջարդված։ Դրան պիտի վերջ տալ։

Պիոներներ. ամառը մոտենում է։ Մեծ տեղ տանք եքսկուրսիաներին, նրանց միջոցով աշխատենք ավելի մոտիկից ծանոթանալ բնության հետ, առողջացնենք մեր մարմինը, ուրախ անցկացնենք մեր ազատ ժամերը, կապվենք գյուղի հետ, այնտեղի պիոներների, բատրակ պատանեկության և մյուս յերեխաների հետ։

Պ. Հարությունյան

ՀԻՆԳԵՐՈՐԴ ՏԱՐԻ

Բանվոր դասակարգի պայքարում, պիոնե՛ր, պատրա՛ստ։

# ՊԻՈՆԵՐ

ՊԱՏԱՆԵԿԱԿԱՆ ՊԱՏԿԵՐԱԶԱՐԴ ԱՄՍԱԳԻՐ

ՕՐԳԱՆ ՀԼԿՅԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԿԻՑ ՊԱՏԱՆԻ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԿԵՆՏԲՅՈՒՐՈՅԻ ՅԵՎ ԼՈՒՍԺՈՂԿՈՄԱՏԻ

Խմբագրության հասցեն — Յերեվան, Ռուբենի № 2

№ 2—3 ԱՊՐԻԼ—ՄԱՅԻՍ 1927 Թ.

## Կ Ո Չ

### ՀԱՅԱՍՏԱՆԻ ՊԻՈՆԵՐՆԵՐԻՆ ՅԵՎ ԲԱՆՎՈՐԱԳՅՈՒՂԱՑԻԱԿԱՆ ՊԱՏԱՆԵԿՈՒԹՅԱՆԸ

**ՍԻՐԵԼԻ ԸՆԿԵՐՆԵՐ!**

*Կոմունիստական կուսակցության և կոմյերիտմիության համար թանգ Հայաստանի պատանեկական կոմունիստական շարժման սկզբնավորումից անցավ վեց տարի։ Տարիներ, վորի ընթացքում այդ շարժումը համառ ջանքերով ծավալվեց ու ամրացավ։*

*Հայաստանի պիոներական շարժումը վոչ միայն հավաքեց ու համախմբեց իր շուրջը բանվորագյուղացիական պատանեկությանը, ընդգրկեց իր շարքերում նրա խոշոր մասը (18 պատկոմի փոխարեն, այժմ ամբողջ Հայաստանում կան 40,000 պիոներներ յեվ հոկտեմբերիկներ), այլ յեվ ապացուցեց, վոր նա յե միայն Լենինյան կոմյերիտմիության արժանի փոխանորդը։*

*Պիոներական կազմակերպության 6 տարին — դա պիոներական աշխատանքների հաղթանակի ու նվաճումների պատմությունն է։ Պիոներական կազմակերպությունն այսօր ավելի քան ուժեղացրել է իր հասարակական գործնական աշխատանքները, բարձրացրել է իր դասակարգային գիտակցությունը։*

*Ինչ խոսք, վոր ամբողջ աշխարհում ծավալվող պատանեկական կոմունիստական շարժման մեջ իր պատվավոր տեղն ունի գրաված Հայաստանի պիոներական կազմակերպությունը։ Ահա թե ինչու մենք այսօր մեր ջերմ ու կարմրավառ վողջույններն ենք ուղարկում ամբողջ աշխարհի պիոներներին, բանվոր ու գյուղացի պատանիներին։*

*Այսօր, արևելքի և ամբողջ աշխարհի ճնշված ժողովուրդները և պրոլետարները միացած՝ կռվում են բուրժուազիայի դեմ, վորը դեռ չի կշտացել բանվորների թափած արյունից և ցանկանում է ավելի ճնշել նրանց և առաջ բերել նորանոր պատերազմներ։*

*Այդ պայքարին օգնում և օժանդակում են չինացի, անգլիացի, ֆրանսիացի և ուրիշ ազգերի պրոլետարների յերեխաները՝ պիոներները։*

*Կորչեն կապիտալիստները։*

*Կեցցեն բանվոր դասակարգի պայքարին օգնող արտասահմանի պիոներները։*

*Ընկեր պիոներներ։*

*Ամրացրեք ձեր կապն արտասահմանում աշխատող ու պայքարող պիոներների հետ։ Կոլեկտիվների միջոցով կապվեք նրանց հետ, գրեք նամակներ ձեր աշխատանքների մասին, պատմեք նրանց մասին ձեր ծնողներին, ցույց տվեք նյութական ու բարոյական օժանդակություն։ Ամրացրեք ինտերնացիոնալ դաստիարակությունը։ Աշխուժացրեք ձեր կոլեկտիվի աշխատանքները, գրավեցեք ձեր շարքերն անկազմակերպ պատանիներին և էլ ավելի ուժեղացրեք ձեր հասարակական գործնական աշխատանքները։*

*Կկատարե՞ք այդ բոլորը, թե՞ վոչ։*

*Զինված Լենինի պատգամներով, մեծ յեռանդով ու պիոներական շարքերի տոկունությամբ, աշխատանքի ու հաղթանակի 7-րդ տարում, կոմկուսի և կոմյերիտմիության անմիջական ղեկավարությամբ, դուք պետք է կարողանաք իրագործել ձեր առաջ դրված խնդիրները։*

*Վստահ և համարձակ, լարված ուժերով, կրկնապատկված յեռանդով, գնացեք ընդդեմ բոլոր դժվարությունների՝ կոմունիստական աշխարհը կառուցելու յեվ նոր հեղափոխական կոմունիստական սերունդ դաստիարակելու։*

*Ուրա՜ պիոներական կազմակերպության ղեկավարներին՝ կոմունիստական կուսակցությանն ու կոմսոմոլին։*

*Համառ ու հաստատ, անդրդվելի յեռանդով, Հայաստանի պիոներական կազմակերպության 7-րդ տարեդարձը նորանոր հաղթանակներով դիմավորելու համար՝ Պիոներնե՛ր, պատրա՛ստ։*

*ՀԼԿՅԵՄ Կենտրոնական յեվ Յերեվանի կոմիտեներ: Հ.Պ.Պ. Կենտրոնական յեվ Յերեվանի բյուրոներ։*

ՍԻՄԱՆ

# ԳԵՂԵՑԻԿ ՕՐԸ




Արեվը թեքվել. մուտքին եր մոտեցել. օդը թարմ եր ու դուրեկան։ Ճիշտ է, դեռ սարերի գագաթներին ձյուն կար յեվ այդ ժամին օդը սառն եր, բայց գարնան շունչն զգալի յեր ամեն տեղ. դաշտերն ու սարալանջերը կանաչ եյին ու պայծառ։

Ամենքն ուրախ եյին ու զվարթ։

Պիոներները հավաքվել եյին դպրոցի բակում պարապմունքի յեվ վճռելու, թե հաջորդ օրը. մայիսի մեկին, ի՞նչ ձևով պետք է մասնակցեն տոնակատարությանը։ Կոլվարն ու ողակավարներից մեկը գնացել եյին խրճիթ-ընթերցարան, ուր այդ ժամանակ հավաքվել եյին գյուղխորհրդի նախագահը, կոմբջիջի յեվ կոմսոմոլի բջիջի քարտուղարները, ուսուցիչը յեվ ուրիշները՝ խորհրդակցելու վաղվա տոնի մասին։

— Գոհար, գիտե՞ս, շարք-շարք կանգնած եզուց կգնանք արտերի մեջ գրոսանքի,—ասում եր Թովրոսն ու սիրուն Ջեմիկը։

— Իսկի յել չե՛, մենք պիոներներ ենք, մայիսի մեկին մենք մի լավ աշխատանք պիտի կատարենք —մեջ մտավ խելոք ու կրակոտ Եմիկը։

— Հա՛ հա՛ ինարկե՛, մենք ի՞նչ ենք... մենք.. մենք ի՞նչ ենք... են որ ընկեր Գեվորգն ասաց է... մենք ինչ ենք,—խառնվեց մոռացկոտ Թ՞ովմասը։

— Գիտեք ինչ, սա ուզում է ասել, վոր մենք պիոներներ ենք, իսկ ընկեր Գեվորգն են օրը բացատրեց, վոր պիոներ կնշանակի նոր ճանապարհ, նոր կյանք փնտրող,—խոսեց ծանր-ծանր Հեղուշը։

Սամվելն ել խառնվեց, Անիկն ել, Երկլին ել ու խումբը մեծացավ։ Նրանք բարձրաձայն խոսում, դատում ու վիճում եյին, թե մայիսի մեկի տոնին հարմար է արդյոք աշխատելը, թե պետք է տոնեն ու միայն հանդեսներ կատարեն։

— Լավ, լավ, շատ մի զոռ տվեք գլխներիդ. այ խորհրդակցությունը վերջացել է, ընկեր Սիմոնն ու Հարությունը գալիս են, կասեն, թե վաղն ինչպես ենք տոնելու,—ասաց մեկը։

— Դե հավաքվեցեք, Մանուկ, փողդ փչիր թող հավաքվեն, վոր իմանան, թե վաղվա տոնն ինչպես պետք է լինի։

Յերկու րոպեյից հետո բոլորը «պատրաստ» կանգնած եյին խելու։

— Ընկերներ - խոսեց կոլվարը — դուք արդեն գիտեք վաղվա տոնի նշանակությունը. դրա մասին թե յես եմ ձեզ ասել յեվ թե ուսուցիչներն են դասարաններում ձեզ պատմել։ Մենք, իբրև նոր սերունդ, իբրև նոր կենցաղ կառուցողներ, պետք է մեր այս մեծ տոնին ել նոր ձեվ ու կատարում տանք։ Մայիսի մեկն աշխատանքի տոնն է ու մենք աշխատանքով ել պիտի տոնենք այդ տոնը։

Վաղը, հասարակական միտինգը, գյուղի առաջի հրապարակում, պետք է լինի ժամի 12-ին. դա նրա համար են ուշացնում, վոր ծխերոցներում յեղած մարդիկն ել գան հասնեն։ Իսկ մինչև միտինգն ըսկսելը, մենք պիոներներս պետք է աշխատենք։

— Ի՞նչ, ի՞նչ պիտի անենք, հարցրին այս ու այն կողմից։

— Այ, հենց այդ է, վոր պետք է վորոշենք մենք այսոր, ասաց կոլվարը։

— Յես առաջարկում եմ գյուղի փողոցները մաքրել, բահեր ու ավելներ կբերենք ու կմաքրենք, ասաց Հեղուշը։

— Դա լավ բան է, բայց գյուղխորհրդի նախագահն արդեն կարգադրել է, վոր այդ բանը կոմսոմոլներն անեն առավոտը վաղ։



Վիճում եյին, թե վոնց մասնակցել տոնին

— Լավ. յես առաջարկ ունեմ. գնանք սարի ճանապարհը շինենք—ասաց Սամվելը։

— Չե՛, չե՛, չե՛,—դա շատ հեռու յե, կհոգնենք։

— Չե՛, չե՛, մենք սարի ճանապարհը չենք կարող լինել։

— Տո՛, դու ճանապարհ շինո՞ղ ես։

Ամեն կողմից հարձակվեցին Սամվելի վրա։

— Սպասեցեք, սպասեցե՛ք,—ընդհատեց կոլվարը.
—Նա շատ մեծ բան է ուզում առաջարկած լինել, բայց սարի ճանապարհը մի յերկու ժամում չի շինվի, հետո, այնտեղ վառոդ, բան է հարկավոր, քար պետք է պայթեցնել. մի խոսքով, դա մեր գործը չէ։

— Յես ասեմ... գնանք իրը .. իրը.. իր անենք,



Մոսնանց Շողերի հողը ցանեցին։

—կակազեց Թոմասը յեվ վոչինչ էլ չկարողացավ ասել։ Բոլորը ծիծաղեցին։

— Դե լա՛վ, լա՛վ, իրը պահիր հետո,—ասաց կոլվարը։

— Մի բան էլ յես ասեմ,—ասաց սիրուն Ջեմիկը, իր չալ ու սիրուն աչքերը փայլեցնելով։

— Ասա՛։

— Մեր հարեվան Մոսնանց Շողերն այրի կին է, 3 էլ մանր յերեխաներ ունի։ Բոլորն իրենց ցանքը վերջացրել են վաղուց, իսկ նա մի տասը փութ կարտոֆիլ ունի ցանելու։ Են որը փոկը նրանց հողը վարել է, բայց Շողեր մորքիրը հիվանդ է, չի կարողանում ցանել։ Յես ասում եմ, վոր մայիսի մեկի տոնին մենք լավ աշխատանք կատարած կլինենք, յեթե նրանց կարտոֆիլը ցանենք։

— Կեցցե՛ խելոք Ջեմիկը, սրանից էլ լավ առաջարկ չեր լինի,—բարձրաձայն ասաց ուրախացած կոլվարը։

— Կեցցե՛, կեցցե՛։

— Կեցցե, խելոք Ջեմիկը,—աղաղակեցին այս ու այն կողմից։

— Ընկերներ, ո՞վ է դեմ Ջեմիկի առաջարկին։

— Վո՛չ վոք։ Ուրեմն վաղն առավոտը, ժամ 9-ին, հավաքվում ենք այստեղ ու գնում ենք Շողեր մորքիրի կարտոֆիլը ցանելու. տղաները թող մի մի բահ բերեն, իսկ աղջիկները մի մի վեդրո կամ հասա զոգնոց,—կարգադրեց կոլվարը,—այժմ ցրվեցեք։

* * *

Մյուս որը, «հսկա» Երեկլեն (ինչպես ասում եյին նրան ընկերները) յեվ ուժեղ Մեսրոպը գնացին Շողեր մորքի տուն ու շալակով կարտոֆիլը կրեցին վարած հողի մոտ։ Մի ժամ էլ չանցավ, տասը փութ կարտոֆիլը պիոներները ցանեցին, մարգեր արին յեվ ուրախ-զվարթ—կարկաչ ծիծաղով վազեցին աղբյուրը՝ ձեռներն ու յերեսների քրտինքը լվացին։

— Ի՞նչ լավ բան արի՛նք,—խոսեց ծանր ու մեծ Հեղուշը։

— Ա՛յ, յես վոր ասում եյի մենք... ի՞նչ ենք... ինչ ենք ենք... պետք է... պետք է... ասաց Թոմասը։

—Մենք պիոներներ ենք, ա՛յ Թովմաս,—վրա բերեց Ջեմիկը,—պիոներներ ենք—նոր ճանապարհ փընտռողներ ենք։

— Նոր կյանք կառուցողներ ենք։

— Նոր տեսակ ենք կատարում մեր տոնը։

— Աշխատանքի մեծ տոնը,—ասացին այս ու այն կողմից, առանց ծիծաղելու Թովմասի վրա, վորովհետեվ ամենից շատ նա յեր ցանել յեվ ամենից ուղիղ նրա մարգերն եյին. նա, աշխատանքի ժամին, կատարյալ հասուն տղամարդ եր։

* * *

Միտինգն սկսվեց. այդտեղ եյին դպրոցի բոլոր աշակերտության հետ յեվ պիոներները, շարքով կանգնած, «միշտ պատրաստ» աշխատանքի ու գործի։

Բջիջի քարտուղարը միտինգը բաց արեց յեվ խոսեց տոնի նշանակության մասին։

Այնուհետեվ, գյուղխորհրդի նախագահը, վորը չոր ու ծաղկատար, բայց շատ խելոք դեմքով մի նիհար մարդ եր, խոսեց շատ խելոք ու գովեց նոր կյանքը, նոր կենցաղն ու պիոներներին, վոր ամենալավ աշխատանքն եյին կատարել։

Բոլորն էլ ուրախացան ու հուզվեցին, յեվ նրանից հետո բոլոր խոսողներն էլ ասացին այդ որվա աշխատանքի մասին։

Վերջում, պիոներների կողմից խոսեց կրակոտ Ջեմիկը, վորն իր ճառը վերջացրեց այսպես.

— Աշխատանքն է մեր տոնը յեվ մենք այսպես ենք տոնում։

18/IV 27 թ.

Պատկեր Ռ. Խաչբեկյանի

## ՄԵՐ ՄԱԹՈՅԻ ՈՐՆ ՈՒ ՏԱՐԻՆ



Ա՜յ ալարկոտ, աներես,
դուն էլ յանի պիոնե՞ր ես,
որը կես օր է դառել,
դպրոց ու դաս չունե՞ս քեզ։



Լվացվում է շատ համեստ,
ականջ, բերան... բան չունե՞ս...
— Ի՞նչ կարիք կա անտեղի
ջուր ու էներգիա վատնել։



Անալոգական ռեժիմ է,
ժամանակն է անտեսում,
դասն ու թեյը միասին
ջուր է շինում ու խմում։

ԳՈՒՐԳԵՆ ՄԱՀԱՐԻ

# ՊԻՈՆԵՐԻԱ.

(Ագիտ պիես 1 գործողությամբ)

## ԳՈՐԾՈՂ ԱՆՁԵՐԸ

1. ԽՈՒԺԱՆ ՎԱՂՈ. Ձեզ ծանոթ.
2. ՊԵՏՅԱ.— Ռուս պիոներ գալիս է Մոսկվայից.
3. ԱԼԻ.—Թուրք պիոներ —գալիս է Բաքվից.
4. ԻԼԻԿՈ.—Վրացի պիոներ—գալիս է Թիֆլիսից.
5. ՍՈՒՐԻԿ.—Ձեզ ընկեր.
6. ՊԻՈՆԵՐՆԵՐ և ՊԻՈՆԵՐՈՒՀԻՆԵՐ.—Բոլորն էլ առողջ, յերեսներից նուռ է կաթում.
7. ԲԱՐՁՐԱԽՈՍ.—Ե՞ն, վոր ամեն օր գոռգոռում է ցերեկներն Աբովյանի վրա։

## I ՏԵՍԱՐԱՆ

*Տեսարանը ներկայացնում է Պիոներական ակումբի դահլիճը. պատի վրա նկարներ, դրոշակներ. բեմը դատարկ է. հեռվից նվագախմբի ձայն, վորը դադարում է. հետո դրսից լսվում է աղմուկ, ապա՝ «բռնե՛ք... փախցրե՛ց... ծլկվե՛ց... ծլկվե՛ց...» բացականչություններ. Ներս է ընկնում խուժան Վաղոն, ինչ վոր թղթե տոպրակ կոխած գլխարկի տակը։*

ՎԱՂՈ.—(*Նրանց նման, հեգնելով*) «Բռնե՛ք... փախցրե՛ց... բռնե՛ք»...։ Վո՞նց չէ, լա՛վ կբռնեք. (*կամկին*) անցյալ որը բռնեցին. մեկը բռնեց թևիս փեշից, քաշեց միլիցիայի տուն, թևիս մի թելը կտրեցի, թևս մնաց ձեռին. յես փախա, յեկա ու մերոնց պատմեցի, լա՛վ ծիծաղեցինք... (*կեղծ հաստ ձայնով*) Հընկեր միլիցիայի տուն. ես խուժանը խուժանություն է անում, խնդրում եմ ը··դ··քավարի սրա ականջները պոկե՛ք... միլիցիայի տանը թե՝ եղանեղ խուժան չկա, խուժանի չորի թևից ես բռնել, գալ, գալ ուրը՝ բեր պոկենք... ասում են էտ մարդն էտ որվանից թեքս ձեռին կատաղած ման է գալիս, ման է գալիս.—(*հանկարծ հիշելով յերգում է*)

Ման ես գալիս քուչա-քուչա,
մեկ ա, ինչ վոր անես փուչ ա,
խուժան Վաղոն պուճուր թիքա,
համ պստիկ ա, համ ճստիկ ա...։

Վայ-վա՜յ.—համա քեֆ անելու քեֆ ունեմ, հա՛.—էտ վոր էտպես, հիմի էն եմ ուզում իմանամ, ինչ եմ թռցրել—մեկ, ես ուր եմ ընկել—երկու. ես ո՞ւր եմ ընկել, տո՛... ասենք խուժանի համար ինչ տուն՝ էն քուն, էնտեղ էլ քո՛ւն... Թռցրածիս մի մտիկ տամ. (*գլխարկից իջեցնում է տոպրակը, վորը պատռվում է յեվ շաքարավազը թափվում գլխին*) վայ-վայ-վա՜յ... ալյուր էր, չէ՛, քաղցր է, շաքարի հող է, շաքարի մոխի՜ր... (*հատակից հավաքում է յեվ ուտում*) հարամ լինի քեզ տված փողը... էսպես միա չեյի տեսել... (*մոտեցող նվագախմբի ձայն*) ո՞հ, մուզի-

կով են գալիս, մուզիկով էլ պիտի բռնեն, մուզիկով էլ պիտի Թակեն... կը Թակեն, վո՜նց չէ... (պահվում է մի դրոշակի յետեվ)։

## II ՏԵՍԱՐԱՆ

(Մտնում են Սուրիկը յեվ ուրիշ պիոներ-ուհիներ. յերգում են «Մենք ղարիբներ ենք»-ի մոտիվով)։

Պիոներներ ենք մենք քաջ,
քայլերով հաստատ,
անվախ ենք, աննահանջ
ու պատրաստ։

Մեզ չի՛ սարսում ցուրտը,
վոչ էլ մարտ ու շառաչ,
Թեկուզ շուրջը մութ է,
բայց առաջ, առաջ, առաջ...

Ջա՜ն, ծաղիկներ գարնան,
ջա՜ն, կոմունար դու կյանք,
ջա՜ն, աշխատանք վառման
ու անկանգ։

Ջոկ-ջոկ մենք անգոր ենք,
մեկտեղ՝ հզոր ու քաջ,
մեր ուղին բոսոր է,
միշտ առաջ, առաջ, առաջ...։

ՍՈՒՐԻԿ.—Յեվ այսպես, ընկերներ, այսօր մենք դիմավորում ենք Պետուն, Այուն և Իլիկոյին. առաջինը գալիս է Մոսկովից, յերկրորդը՝ Բաքվից. յերրորդն էլ դուք սեք...
ՄԻԱՍԻՆ.—Թիֆլիսից...
ՍՈՒՐԻԿ.—Ճիշտ... մեր ընդունելությունը պետք է լինի. .
I ՊԻՈՆ.—Ուրախ.
II ՊԻՈՆ.—Հաղթական.
ՄԻԱՍԻՆ.—Պիոներական.
ՍՈՒՐԻԿ.—Ուրեմն...
ՄԻԱՍԻՆ.—Գործի։

(Վերցնում են դրոշակները, դրոշակներից մեկի յետեվից դուրս է գալիս Վաղոն)։

ՍՈՒՐԻԿ.—Ոհո՜... ինչ ես անում դու այստեղ։
ՎԱՂՈ.—Հե՜չ... ման եյի գալիս, ասի մի մանեմ, տեսնեմ, ինչ կա, ինչ չկա... (կեղծ) է, վո՜նց եք։
I ՊԻՈՆ.—Հլա դու են...
ՄԻԱՍԻՆ.—Սաա ..
II ՊԻՈՆ.—Դու...
ՄԻԱՍԻՆ.—Ո՞վ ես...
ՎԱՂՈ.—(Չհասկանալ ձեվանալով) Ե՛հ, վոչինչ, փառք աստծո, ապրում ենք. Թե ասեմ շատ լավ եմ, ենքան էլ լավ չեմ, Թե ասեմ շատ վատ եմ... վոչինչ (մի ճխլտած ծխախոտ է հանում ու սկսում է ծխել). դուք «Տարզան» տեսե՞լ եք...



Ցուցանակը բանկոոպի
խելքն է տարել Մաթոյի.
— Էս ինչ լավն է, ինչ փայլուն...
Ջուրն էլ բերնից է վազում։



Տուր Թե կտաք... ջա՜ն, ուռա՜,
— աղջի, վազիր... խուժաններ,
— ճամբեն կտրի, շուտ արա,
— վա՜յ, մամա ջան .. միլիցիա՜..



Շուլուխի դաս. լավ քեֆ է,
էլ ինչ լսել ու ինչ դաս.
Մաթո՛, խեկը քո տեղն է,
«եշ» գրելու «միշտ պատրաստ»...



— Ինն անգամ ին՝իննուսուն ինը ..
ինչ կասեք դուք մեր հանճարին.
— վեց անգամ վեց, տասնուվեց. .
ինչ պակաս եր լրացվեց։

Ուսուցիչը .. հէ՜, ինչ հոգ,
խաբել հեշտ էր անկասկած,
— հավաքույթ կար կամ ժողով,
ձեր գիտեր Մաթոն քաջ։



— Ընկեր Մաթո, ինչու չեք
հավաքույթի հաճախում,
—դե ինչ անեմ, ախար է...
դասից աչք չեմ բացանում։



Այ վորդի ջան, էս կեֆրդ է,
բա ինձ ջուր էլ չես բերում.
— Է, տեսնում ես վռազ եմ, հավա-
քույթի եմ գնում։



Ցերկու՝ դասերից ծլկած՝
հերոսները գործի յեն,
վերջը տեսնենք, խեր լինի,
միմիանց բուրդը չգզեն։

ՄԻԱՍԻՆ.—Ասացեք մեզ ձեր անունը...
ՎԱՂՈ.—Վա-ղո.
ՄԻԱՍԻՆ.—Ձեր սոցիալական դրությունը.
ՎԱՂՈ.—Ծու-ժան.
ԲՈԼՈՐԸ.—Ծու-ժա՜ն-ես։
ՎԱՂՈ.—(յերգելով) Ես ժամը։
I ՊԻՈՆԵՐ.—(հեգնանքով) Վո՞ր ժամը...
ՎԱՂՈ.—Են, վոր վրեն մի պոպոզ,
մեջը՝ հեչ, մեջը՝ թո՜ղ...
ԲՈԼՈՐԸ.—(յերգում են «Սիրուն թիթեռ»-ի յեղանակով).
Ծուժան Վաղո, մեզ ասա,
Թե ինչո՞վ ես դու ապրում,
ամբողջ օրը վազում ես,
ինչպե՞ս է վոր չես հոգնում...
ՎԱՂՈ.—Ղանթարում ու բազարում
ման եմ գալիս վողջ օրը,
հաճախ կենտ մի գազարով
լցնում անտակ իմ փորը...
I ՊԻՈՆԵՐՈՒՀԻ.—Խե՜ղճ Վաղո...
ՎԱՂՈ.—Բայց մեկ-մեկ էլ... (հերոսաբար) մեկ-մեկ էլ...
ԲՈԼՈՐԸ.—Մեկ-մեկ էլ ինչ...
ՎԱՂՈ.—(խեղճ) մեկ-մեկ էլ, մի կենտ գազար էլ չի ընկնում ձեռքս...
ԲՈԼՈՐԸ.—Ես ինչ, յեղավ քաջությո՜ւն...
ՎԱՂՈ.—Խեղճությո՜ւն, խեղճություն...

(«Ցար ունեյի»-ի մոտիվով)
Հեր ունեյի, մեր ունեյի
ընկան ու մեռան.
մի պուճուր խրճիթ ունեյի,
վոր յեղավ վերան...
ԲՈԼՈՐԸ.—Ախ, փոքրիկ Վաղո,
ինչու վորբացար,
ուսում, կրթություն
ինչու չստացար..
ՎԱՂՈ.—Ցերբ հեռացա յես մեր տնից,
որս խավարեց,
խուժան դառա, գրկվա քնից,
դարդ ու բալա չեր...
ԲՈԼՈՐԸ.—Ախ, փոքրիկ Վաղո,
ինչու վորբացար,
ուսում կրթություն
մեզ պես չստացար...
ՎԱՂՈ.—Ուսո՞ւմ... ուսում յես էլ եմ ուզում, կաղ Գեվոն էլ է ուզում, գալում Սերոբն էլ է ուզում, շլդիկ Շմոն էլ է ուզում, ուզում են, դիփ ուսում են ուզում.
Բայց յերբ չունես հաց ու պանիր,
թող ուսումը, խուժան դառիր.
սոխի կլե՞պ, չամչի բռնե՞ր,—
խուժան գրվենք, պատվով մեռնենք..
(Պիոներները խորհրդակցում են)

ՍՈՒՐԻԿ.—Վաղո, դու ուզո՞ւմ ես մեզ հետ աշխատես. կարես ման-կատանը, մեզ հետ, մենք կխոսենք մեր վարիչի հետ։

ՎԱՂՈ.—Չե, չեմ կարա...

I ՊԻՈՆԵՐՈՒՀԻ —Ինչո՞ւ...

ՎԱՂՈ.—Դիսպիցլին ա...

II-ը.—Վո՞նց...

ՎԱՂՈ.—Դիսպիցլին ա...

III-ը.—Էտ ի՞նչ բան ա...

ՎԱՂՈ.—Էտ էն բանն ա, վոր չես առանց մեր խմբի հրամանի, չեմ կարա... դիսպիցլին ա...

ԲՈԼՈՐԸ.—Ա՜խ, դիսցիպլինա...

ՎԱՂՈ.—Էտ ա վոր կա... հիմա, էտ էլ չի, կը ճղնի կը գալի, բայց դե՝ մանկատունը ձեզ ըլի, յես ամերիկացու չեմ սիրում...

I ՊԻՈՆ.—Ի՞նչ ամերիկացի, պետական մանկատուն, մեր վարիչն էլ մի լավ ընկեր ա, ինքն էլ կոմսոմո՞լ...

II ՊԻՈՆ.—Վաղո, դու գիտե՞ս ինչ ա կոմսոմոլ...

ՎԱՂՈ.—Ինչո՞ւ չգիտեմ վոր, կոմսոմոլն աստված չի ճանաչում։

IV ՊԻՈՆ.—Է, դու աստված ճանաչո՞ւմ ես...

ՎԱՂՈ.—Ղանթարո՞ւմն ա, յա թե չե հաց ծախո՞ղ ա, վոր ճանաչեմ... (ծիծաղ)։

ՍՈՒՐԻԿ.—Ընկերներ, մենք կարող ենք ուշանալ, ուր վոր է կըգան մեր ընկերները, (պատուհանից նայելով) արդեն շարքերը պատրաստ են. Վաղոյին էլ մի դրոշակ տվեք ու մի վըզ-կապ, նրան մենք պետք է մեր ընկերը դարձնենք.—(դըր-սից նվագ, ուռա յեվ ծափեր)։ Շարքո՜վ կա՜նգ-նե՛լ!!!

ՍՈՒՐԻԿ.—Վաղո, դիսցիպլինա... (շարքերին) Պա՛տ-վի!!! (բոլորը պատ-վի յեն առնում, նվագախմբի յեվ ուռաների ձայների տակ, ներս են մտնում Պետյան, Ալին յեվ Իլիկոն)։

ՊԵՏՅԱ.—Привет!

ԲՈԼՈՐԸ.—Привет!

ԱԼԻ.—Սալամ!

ԲՈԼՈՐԸ.—Սալամ!

ԻԼԻԿՈ.—Գամարջոբա!

ԲՈԼՈՐԸ.—Գամարջոբա!

ՍՈՒՐԻԿ.—Վողջույն Հայաստանի պիոներներից Ռուս, Թուրք և Վը-րացի յեղբայրական ժողովուրդների պիոներներին։

ՅԵՐԵՔԸ.—Վողջույն!

ՎԱՂՈ.—Քեֆ, հա՛լ, վո՞նց եք. ձեզ մոտ էլ խուժաններ կա՞ն, վո՞նց է խուժան ժողովուրդը, շաքար փախցնո՞ւմ են, դրոշակի յետև պահվո՞ւմ են, հետո յել դրոշակի տեր դառնո՞ւմ են...

I ՊԻՈՆ.—Վաղո, դիսցիպլինա...

ՎԱՂՈ.—Դիսպիցլին ա,
անցածն անցած ա,
Վաղոն քաղցած ա...

ՊԵՏՅԱ.—(«Նա լեյ նա լեյ»-ի մոտիվով)
Վողջույն ռուս աշխարհից
հայկական շարքերին,
Ջերմ վողջույն բոլորիդ
գյուղացուց, բանվորից...



Հո ի զուր չե՞ Մաթոն մեր
էնքան կինո գնացել...
խաղի հենց էն թունդ ժամին
տուր ու դմբոցն սկսեց։



Որերն անցան շատ արագ.
մին էլ ըհը՜ը ... ամառը.
Մաթո, վո՞նց է քո բանը,
չաշխատեցի՞ր ձմեռը,
դե, ստացիր քո «նվերը»։

ՊԻՈՆԵՐ!

Ուզո՞ւմ ես իմանալ, թե ինչ է կատարվում

**ՉԻՆԱՍՏԱՆՈՒՄ**

ԿԱՐԴԱ!

«Պիոների» այս №-ում տըպ-ված Գ. Անդրեասյանի հոդ-վածը—«ՊԻՈՆԵՐՆԵՐԻՆ՝ Չի-նաստանի հեղափոխության մասին»։



## ՀԿ (բ) ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ ԲԱՆՎՈՐՀՈՒ ՅԵՎ ԳԵՂՋԿՈՒՀՈՒ ԲԱԺՆԻ ՎԱՐԻՉ ԸՆԿ. ՖԼՈՐԱ ՎԱՐԴԱՆՅԱՆԸ՝ ՊԻՈՆԵՐՆԵՐԻՆ

**Սիրելի փոքրիկ ընկերներ!**

Ողջունում եմ պիոներական շարժման 6-րդ տարեդարձը յեվ ցանկանում, վոր այդ շարժումն այնպիսի ուժեղ թափով աճի յեվ զարգանա, վոր վոչ մի պատանի դուրս չմնա պիոներական շարքերից։ Մեր գյուղը դեռ շատ խավար ե յեվ կարիք ունի ձեր աշխատանքին։ Սովորեցեք յեվ սովորեցրեք ձեր անգրագետ մայրերին գրագիտություն։

Սովորեցե՛ք, ձեր պատանեկական ուժերով, գյուղատնտեսության նոր ձեվերն ու միջոցները, աշխատեցեք ձեր ընտանիքում, օգնելով ձեր ծնողներին, նրանց յեվս սովորեցրեք այդ նոր միջոցներն ու ձեվերը, վորոնք կբարձրացնեն ձեր գյուղի տնտեսությունը։

Վլադիմիր Իլյիչը 1920 թվին նամակներ եր ստանում գյուղական մանուկներից։ Նրանցից մեկը գրել եր, վոր ինքն ամեն օր սկսել ե լվացվել։

Այդ նամակը մեծ ուրախություն եր պատճառել ընկ. Լենինին, վորովհետեվ նա գտնում եր, վոր դա մեծ նշանակություն ունի մեր կյանքի համար, վոր մանուկը, սովորելով ինքն իրեն լվացվել, իր ծնողներին եվ կամաց-կամաց կսովորեցնի մաքրություն սիրել։ Սա ի հարկե մի օրինակ ե, վոր ցույց ե տալիս, թե ինչպես դուք, փոքրիկ ընկերներ, կարող եք իրոք ձեր լավ, օգտավետ սովորություններով բարձրացնել գյուղի կենցաղը։ Յեվ այսպիսով կարող կլինեք խավար գյուղը կամաց-կամաց լուսավորել։

Ուժեղացրե՛ք ձեր կապը ձեր ընտանիքի հետ։

Կեցցեն մեր նոր կենցաղի փոքրիկ շինարարները։

Կեցցեն պիոներները։

ԲՈԼՈՐԸ.—Ողջույն, ողջույն,
ընկերներ, ողջույն,
ողջույն, ողջույն,
ընկերներ ողջույն,
ողջույն քեզ, ողջույն,
պիոներագունդ։
ԻԼԻԿՈ.—Կովկաս լեռների
ջրերի նման հորդ,
մենք ձայնն ենք նոր կյանքի,
իրական ու ծանոթ։
ԲՈԼՈՐԸ.—Ողջույն, ողջույն եյն...
ԱԼԻ.—Դարերով յեղել են
հայն ու թուրքը թշնամի,
ահա մենք, ընկերներ,
գիրկերումն ենք մի կովի...
ԲՈԼՈՐԸ.—Ողջույն, ողջույն հյն...
ԽՈՒՄԲ.—Ընկերներ, մեր երկից
վոչ վոք դուրս չմնա,
մեր ուղին—լենինիզմ,
դրոշը—կոմունան...
Ողջույն, ողջույն եյն...
ՎԱՂՈ.—Լավ եք յերգում, բայց դե վոր յես չեմ իմանում...
ՍՈՒՐԻԿ.—Ծանոթացեք, ընկերներ, սա խուժան Վաղոն ե, մենք սրան տանում ենք մեր կոմունան, ենպես չի՞, Վաղո, իսկ դու վոչ մի յերգ չգիտե՞ս...
ՎԱՂՈ.—Գիտեմ, համա բայց իմ իմացածից չե՞ք յերգում վոր...
ԲՈԼՈՐԸ.—Ապա՛, ապա՛, վո՞րն ե քո իմացածը...
ՎԱՂՈ.—Ա՛յ, (ծափ տալով)
Չիկի, չիկի, չիկի, չիկի,
դանթար չիկի,
բոքոն չիկի,
փայտոն չիկի...
«Բանկոպ» ռեստորանում
կատլետ ու բիսկի.
պադավադչիկ, թարս ես նայում,
ինչ ունես մոքիդ...
Չիկի, չիկի եյն...
Իմ յերգն ես ա... գիտեմ, ծիծաղում եք, վոր եսենց յերգ եմ յերգում... լավը սովորացրեք, լավը յերգեմ...
ԲՈԼՈՐԸ.—Կ՛ը, կ՛ը, կը!!!
ՎԱՂՈ.—Ի՞նչ կը-կը-կը...
ԲՈԼՈՐԸ.—Կը սովորեցնենք, կը սովորեցնենք, կը սովորեցնենք...
ԲԱՐՁՐԱԽՈՍ.—(խորքից) Վերջին հեռագիր.—«Կոչեր ցրելու համար բանտարկված են Բուլղարիայում պիոներական կազմակերպության յերկու անդամները. Նրանց նետեցին կարցերը, նրանց քաղցած եյին պահում և անջուր. այսոր առավոտյան փոքրը, Դիմիտրին, չկարողանալով դիմանալ բանտային ծանըր պայմաններին, վախճանվեց։ Խորհրդային յերկրների պիոներներ, չմոռանաք ձեր փոքրիկ հերոս ընկերոջ, բուլղար պիոներ Դիմիտրու հիշատակը։

ԲՈԼՈՐԸ.—(Գլխարկները հանում են. խորքից նվագում է մահվան քայլերգ: Պաուզա: Ալյա արտասանում են).

I-ը. Խորհրդային յերկրների պիոներներն ազատ են.

II-ը.—Բանվորական դրոշին հարազատ են.

ՄԻ ԽՈՒՄԲ.—Իսկ հեռվում, ուրիշ յերկրում,
մեռնում են մեր ընկերները...
մեռնում են մեր ընկերները,
վորոնք ուրիշի դեմ
անհնազանդ են...

II ԽՈՒՄԲ.—Մենք կը գանք, մենք կը գանք
և վորպես մի մարդ,
վճռական կտանք...

ԲՈԼՈՐԸ.—Վերջին մարտ, վերջին մարտ...
վե՜ր-ջի՜ն!!!

ՎԱՂՈ.—Դիսպեյցի՜ն ա... քիչ դալմաղալ արեք...

ՍՈՒՐԻԿ.—Ընկերներ, յեկեք այսօրվա հանդիպման առթիվ մեր Վաղոյին կնքենք կարմիր կնունքով, նոր անունով կոչենք ու դարցնենք մեր կոմունայի անդամ, համաձա՞յն եք, ընկերներ...

ԲՈԼՈՐԸ.—Համաձա՛յն ենք, համաձայն ենք...

ՎԱՂՈ.—Թողեք, ընկերներ, յես մի ճառ ասեմ, ընկերներ...

ԲՈԼՈՐԸ.—Լսու՜մ ենք...

ՎԱՂՈ.—(Կանգնելով աթոռի վրա) Ընկերնե՛ր, յես քաղցած եմ, ընկերներ, մինչև վոր, ընկերներ, յես չկշտանամ, ընկերներ, վոչ կը կնքվեմ, ընկերներ, վոչ կը պսակվեմ, ընկերներ, վոչ կարմիր, ընկերներ, վոչ սիպտակ, ընկերներ, քաղցա՜ծ եմ, ընկերնե՛ր...

ՍՈՒՐԻԿ.—Ամոթ է, Վաղո, մենք այստեղ սոցիալիզմ ենք կառուցում, իսկ դու՝ քաղցած եմ, քաղցած եմ, քաղցած եմ, քաղցած եմ... անուններ առաջարկեցեք, Վաղո, դու նստիր մեջտեղ...

ՎԱՂՈ.—(«Ման եմ գալի»-ի մոտիվով)
Թողեք գնամ, քուչեն ընկնեմ,
քիչ հաց ուտեմ ու գամ կնքվեմ,
շատ եմ քաղցած, փորս կը ցավի,
քաղցած փորին ինչ սոցիալիզմ...

ՄԻ ՊԻՈՆԵՐՈՒՀԻ.—Դու հիմա ունես կարմիր վզկապ...

II-ը.—Քեզ չի կարելի գողանալ...

III-ը.—(Ներս մտնելով) Իսկ յես քեզ համար բերի բուլկիներ:

ՎԱՂՈ.—Բե՛ր, բե՛ր... Թացրե՞ր, ես վո՞րտեղից թացրիր... (ծիծաղ, Վաղոն ագահաբար ուտում է):

IV-ը.—Ընկերներ, յես առաջարկում եմ Վաղոյի անունը հենց բուլկի էլ կնքենք:

ՎԱՂՈ.—Բուլկի կտա՞ք ամեն որ, թե կտաք՝ պաժալուստա:

ՍՈՒՐԻԿ.—Անուննե՛ր, անուննե՛ր...

ՊԵՏԻԱ.—Նվիրեք Վաղոյին Ռուսաստանին, մենք նրան շատ չայ կը խմցնենք. մեր կոմունան ուրախ է...

ԱԼԻ.—Նվիրեք Ադրբեյջանին... մենք նրա շատ նավթ կտանք... ենքա՛ն նավթ...

## ԿԱԼՈՒՄ

Կալում շոգ է ու թոզ,
կալում հացի դեզեր,
նրանց դոշին վոսկի
ընկած հասուն հասկեր:

Կալում փռված խուրձեր,
ձմրան լի-լի հույսեր...
կալում փնչոց յեզան
ու յերգեր գլգլան:

Կալում պիոներներ վառ,
բեզրած, թոզից, շոգից,
քշում են կամերը
մինչ իրիկունն իջնի:

**Պիոներ՝ Ռենց**

*Մարտունի գյուղ*

---

## ԻՆՉ ԿԱՐԴԱԼ

**Ս. Միխայլով «Սպարտակ». Պետհրատ, 1927 թ. եջ 48, գինը 18 կ.**

Այն բոլորը, ինչ վոր պատմված է այս գրքույկում, տեղի յե ունեցել շատ ու շատ վաղ ժամանակներում, սրանից ավելի քան 2 հազար տարի առաջ: Այն ժամանակ, աշխարհիս ամենամեծ և ուժեղ պետությունը Հռոմի պետությունն եր: Դեռ այն ժամանակ էլ հասարակությունը բաժանված եր դասակարգերի. հազարավոր ստրուկներ աշխատում եյին հարուստ դասակարգի համար: Յեվ ահա, բռուկ գլադիատոր (ըմբիշ) Սպարտակը հավաքում է մի խումբ մարզված ստրուկների և ապստամբում է Հռոմի կառավարության դեմ: Կարճ ժամանակում, հազարավոր ստրուկներ հավաքվում են Սպարտակի դրոշի տակ և հերոսական կռիվ մղում իրենց ազատագրման համար. նրանք գրավում են բազմաթիվ քաղաքներ և ազատություն են տալիս ըստրուկներին. բայց վերջը պարտվում են:

Սպարտակի ապստամբությունն աշխարհիս ամենամեծ հեղափոխություններից մեկն է, և թեև գրեթե բոլոր պիոներներն էլ գիտեն Սպարտակի մասին, բայց մի քանի անգամ հարկավոր է կարդալ այս գրքույկը, ծանոթանալ հին ստրկական կյանքին, ստրուկների հերոսական պայքարին և հեքյաթային հերոս Սպարտակի գործին, վորի անունով են կոչվում այժմ մեր շատ կոլլեկտիվները: Գրքույկը գրված է պատմվածքի ձևով և անչափ հետաքրքրությամբ է կարդացվում:

Գինը մատչելի յե:

Գ. Ն.

*ԻԼԻԿՈ.—Ընկերներ, ձեր-մեր չկա, յես էլ կարող եմ Վրաստանի կուլտուրուզով պարծենալ, բայց չէ, ինչի վոր մենք բոլորս էլ մեկ ենք... Գամար-Ջոբա...*

*ՍՈՒՐԻԿ.—Ճիշտ է, ընկերներ, քանի վոր մենք Վաղոյին դրոշակի տակից հանեցինք, յեկեք անունը Դրոշակ էլ դնենք, այս դրոշակը մեզ բոլորիս միացնող դրոշակն է...*

*ԲՈԼՈՐԸ.—Համաձայն ենք, համաձայն ենք։*

*ԱԼԻ.—Բայդաղ, Բայդաղ, արխադաշ Բայդաղ...*

*ՎԱՂՈ.—Իսկ յես բայդաղ պիտի ուտեմ...*

*ՍՈՒՐԻԿ.—Իսկ հիմա, ընկերներ, գնանք մեր ողակներին այցելության...*

*ԲԱՐՁՐԱԽՈՍ *).—Կեցցե ժողովուրդների յեղբայրությունը։*

*ԲՈԼՈՐԸ.—Ուռա...*

*ԲԱՐՁՐԱԽՈՍ.—Կեցցե մեր խոսացող շարքերը...*

*ԲՈԼՈՐԸ.—Վաշա...*

*ԲԱՐՁՐԱԽՈՍ.—Կեցցե պրոլետարական պիոներիան...*

*ԲՈԼՈՐԸ.—Յաշասուն!*

*(«Մարշի» տակ բոլորը դուրս են գնում)։*

---

**) Ծ. Խ.— Բարձրախոսը կարող է հայտարարել տեղեկություններ, լոզունգներ, համաձայն օրվա տոնի կամ քաղաքական դրության։*

**ՎԱՐԱԳՈՒՅՐ**

ԽՈՐՀՐԴԱՅԻՆ

ՄԻՈՒԹՅԱՆ

ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԲԱՆԱԿԸ




ՔԱՂԱՔՈՒՄ ԳՅՈՒՂՈՒՄ

---

**ԽՆԿՈ ԱՊԵՐ**

# ՄԱՐԴՆ ԻՆՉՈ՞Վ Է ՃԱՄԲՈՐԴՈՒՄ

*Մի մանկական*
*Պատկերազարդ գրքույկ կա,*
*Վորտեղ փոքրիկ մի տղա*
*Հեծած քշում է սայլին.*
*Մի ուրիշն էլ խեցգետնին։*
*Մեզ հարցնես՝ սուտ է այդ,*



*Սուտ խոսելն էլ՝ վատ է, վա՛տ.*
*Խեցգետին շա՜տ աշխարհում,*
*Բայց խեցգետին չեն նստում։*
*Սագ՝ վոր բոլորս ենք տեսել,*
*Միսը կերել ու մարսել,*
*Փետուրները լցրել բարձ։*
*Վոր այդպես է՝ էլ ինչ հարց։*
*Սագ չեն հեծնի, չեն լծի,*
*Սագը սագ է և վոչ ձի։*
*Ցերեխաներ, դուք դատեք,*
*Պոչով սուտը նկատեք։*
*Հիմա պատմեմ այս գրքում,*
*Մարդն ինչո՞վ է ճամբորդում։*

**ՇՆԵՐԸ**

*Այ, օրինակ, շները հենց,*
*Հաջան, կծան, փոքրիկ և մեծ.*
*Նրանք, մեզ մոտ,*
*Իրիկուն, առավոտ,*
*Քուչա և փողոց*
*Արել են շնոց։*
*Լավ է՝ դեռ շներ էլ կան,*
*Վոր գնում են վորսի մի մի անգամ։*
*Բայց լսեք թե ինչ եմ ասում.—*
*Ձյուների մեջ, հեռու հյուսիսում,*

Շներն ունեն ուրիշ աշխատանք.
Ճիշտ բանին պիտի հավատաք.
Նախ՝ ունեն բրդոտ մորթի,
Դիմանում են սաստիկ ցրտի,
Խոտ չեն արածում,
Սովածությունից մարդու չեն կծում,



Ձուկ, մուկ են ուտում,
Կուշտ կուշտ աշխատում։
Եսկիմոսներին նրանք գանձ են, գանձ.—
Մեծ սահնակներին լծում են նրանց,
Բեռներ են կրում, առևտուր անում,
Հյուրեր ընդունում, իրենք հյուր գնում։

## ՅԵՂՋԵՐՈՒՆԵՐԸ

Հիմա այս բանին
Ուշադրությունը ձեր.
Ցուրտ հյուսիսում կան յեղջերուներ.
Նրանց լծում են,
Նրանց հեծնում են,
Մորթին հագնում են.
Մորթուց կարում են գլխարկ ու մուշտակ



Ու հագնում տաք տաք։
Բայց տերերը՝ լոպարները՝
Անգութ, անխիղճ են,
Յեղջերվի ցեղն անշուշտ կչնչեն,
Յեթե միշտ այդպես կոտորեն նրանց.
Նրանք սխալ են, սխալ անկասկած։

## ՅԵԶՆԵՐԸ

Ալ յեզը, չալ յեզը,
Քանի բառնամ տար յեզը։
— Ո՞ւմ են լծում սայլերին.
— Ի հարկե գոմեշներին, յեզներին.
Փոխադրելով ծանր բեռ,
Գոմեշ և յեզ ուժեղ են, ուժի տեր.
Թեև ծանրավոր են և ծանրաքայլ,



Բայց գիտեն շատ դիմանալ,
Կտրում են յերկար ճամբա։
— Հո, հո, առաջ չեն գնա.
Յեզը յեզ է, միշտ համառ,
Ճիպոտի տեղ մահակ առ։

## ՈՒՂՏԸ

Մարդուն պետք է ուտելիք,
Մարդուն պետք է խմելիք.
Մարդը հենց մի օրից ավելի
Չի դիմանում ծարավի.
Բայց ուղտերը յոթ-ութ օր



Ճամբորդում են անկեր, անջուր,
Յեվ դրա համար, ուղտերով
Գնում են անապատով,
Վորտեղ չկա խոտ, գետ, աղբյուր,
Գեթ խմելու մի կաթ ջուր։

## ՓԻՂԸ

Գազանանոց վոր գնաս՝
Կզարմանաս կ[illegible]աս։
Փիղ կտեսնես մեծ վանդակում.

Բայց այդպես չի Հնդկաստանում.
Այնտեղ փիղ կա ընտանի,
Մի շատ խելոք կենդանի.
Մեջքին տուն են կառուցում,
Կին, յերեխա մեջն ածում.
Ընտանիքով՝ տուն-տեղով՝



Ճամբորդում են մեծ փղով։
Փիղը ծանր է ու հանգիստ.
Ցեվ դուրս գալը՝ հպարտ, խիստ
Հանդիսավոր։ Այն է վատ,
Վոր չի կարող ամեն մարդ
Փիղ ձեռք բերել. գինն է թանգ
Ամեն ժամանակ։

## ԿՈՒԼԻ—ՌԻԿՇԻ

Դու դեռ փոքր ես, չգիտես.
Այս աշխարհի բանը տես.
Ցեգս են լծում հարավում,
Ցեղջերուն՝ հյուսիսում,
Փիղ են նստում հնդկացիք,
Ուղտը՝ յեգիպտացիք։



Ճապոնացի, չինացի
Մարդն են արել կառքի ձի.
Նույն մարդն է ձի, կառապան,
Առած վարձը չնչին բան.
Հոգիդ դուրս գա, այ կուլի,
Կառքդ հանիր ծուլ-ծուլի.
Հոգիդ գուրս գա, այ ռիկշի,
Կառքդ արագ միշտ քաշի,
Թե չէ, գրոշ չեն տա քեզ,
Թեկուզ սովից դու սատկես։

## ԳՆԱՑՔԸ

Գնացք կա ապրանքատար.
Գնացք էլ կա՝ մարդատար.
Կտրում անցնում են անդադար
Սարեր, ձորեր, անտառներ
Ցեվ այցելում քաղաքներ։
Ճամբորդելը գնացքով
Շատ էժան է, շատ էլ հեշտ.
Գնալ գալդ ապահով,
Ուզած տեղդ իջիր միշտ.
Գնացքն ինչ է՝ վագոններ՝
Իրար կպած սենյակներ.



Անիվների տակ ուղի,
Ռելսեր—յերկաթուղի.
Մի մեքենա—շոգեշարժ,
Ցերկաթուղով արագ, վարժ,
Անիվները գնացքի
Գլորում է ճչալով,
Ծխատ վրնչալով, փնչալով։
Փղերն ինչ են գնացքի մոտ.
Թեև չունի նա ձեռ, վոտ,
Բայց տանում է հազար մարդ,
Ենպես հանգիստ ու հանդարտ։

## ՇՈԳԵՆԱՎԸ

Աշխարհում կա շատ գետ ու ծով.
Բայց ջուր չեն մտնում գնացքով.
Ջրի համար կա շոգենավ,



Գնացքից էլ շատ, շատ լավ,
Շատ վիթխարի, շատ հսկա,

*Շողենավում՝ ինչպես*
*Տանըդ քեզ զգա։*
*Անցիր գետ, ծով, ովկիանոս.*
*Ել ի՜նչ գնացք, ի՜նչ սար ու ձոր,*
*Դար ու փոս.*
*Շոգենավով քեզ հետ տար*
*Հազար, հազար փութ պաշար,*
*Ալյուր, բրինձ, յուղ, ձուկ, միս,*
*Տարին տասներկու ամիս։*

## ԱՎՏՈՄՈԲԻԼԸ ՅԵՎ ՏՐԱՄՎԱՅԸ

*Ձին չի քաշում. Հիմա, այ,*
*Ավտոմոբիլ, տրամվայ,*
*Կեր ու խնամք չեն պահանջում,*
*Վոչ տանջվում են, վոչ տանջում.*
*Հոգնել չունեն, գնա նստի,*
*Միշտ էլ տեղ կա պատրաստի։*



*Հիմա ձիու տեղ բանում է մեքենա,*
*Ձին նրա չափ չի գնա.*
*Տրամվայը մի ժամում*
*Քսան վերստ է միշտ անում.*
*Իսկ ավտոն՝ մոտ հարյուր,*
*Ել ո՞ւր մնաց ձին, էլ ո՞ւր։*

## ՕԴԱՆԱՎԸ

*Մեքենան հո թռչուն է,*
*Թևեր չունի՝ թռչում է,*
*Ման է գալիս նա օդում*
*Ու ամեն կողմ պտտում։*



*Օդանավն էլ թռչում է,*
*Բայց յերբեմն էլ իջնում է,*
*Վոր վառելիք վեր հանի.*
*Ափսո՜ս, շատ մարդ չի տանի.*
*Լավ կլինի, ինչքա՜ն լավ,*
*Վոր մարդ նստի օդանավ։*

---

Վ. Ա-Ն.

# „ՊԻՈՆԻ ԲԱՂՉԵՆ" ԿԱՄ „ԱՍԼԱՆԻ ԺՈՒՏԵՐԸ"

*Մեր տան առաջ մի կտոր հող ունեյինք, խամ էր ու պարապ։ Ծերունի հայրս մի քանի անգամ այդ հողում ծառ տնկեց, բանջարանոց գործեց, բայց մեր հարևան հարուստ Սերգոյի անասունները փչացրին, մաղաչ տունկերն արմատահան արին։ Այնուհետև մեր հողը դարձավ Սերգոյի սայլերի յեվ անասունների մշտական ճամբան։*

*Աղքատ եյինք, ցանկապատելու յեվ մշակելու ուժ չունեյինք։*

### ՎՈՐՔԱ՞Ն ԼԱՎ Է ՄԻԱՍԻ՞Ն ԱՇԽԱՏԵԼ

*Գարունը բացվել էր, բնությունը ջահելացել։ Յես դպրոց եյի հաճախում, իսկ ճաշից հետո գնում եյի արտի հորիքը բզելու։*

*Ապրիլյան մի պայծառ առավոտ, յերբ դպրոց հասա, տեսա աշակերտներին զինված բահերով ու բրունգներով։ Մի բահ էլ ինձ տվին։ Զանգը տալուն*



*Սերգոյի անասունները մաղաչ տունկերն արմատահան արին*

*պես վրա ընկանք բահերին յեվ սկսեցինք վարել դպրոցի կողքի հողամասը, իսկ մի խումբ աշակերտներ մեր հեռվից փոսեր եյին փորում յեվ տունկեր տընկում։*

*— Վորքա՜ն լավ է միասին աշխատել, — բացականչեցի յես, յեվ մի՞թե մենակության պատճառով չէ, վոր մեր փոքրի հողը Սերգոյի տավարի ճամբեն է դարձել, — խկույն մտածեցի յես յեվ մի լուսավոր միտք ծագեց իմ մանուկ ուղեղում — **մեր հողը մշակել պիոներական կոլլեկտիվի ուժերով։***

### ՀՈՐՍ ՀԱՄՈԶԵՑԻ

*Յերեկոյան դեմ՝ յես արդեն արտում՝ հորս մոտն եյի։ Պատմեցի այդ օրվա մեր տարած աշխատանքի մասին յեվ վերջում ավելացրի.*

— Ազի, դու բեր մեր տան առաջի հողը տուր մեր կոլլեկտիվին մշակենք. բեզ էլ բաժին կտանք։

Հորս գնըրով արհամարհական ժպիտի նման մի բան անցավ. նա կանգնեցրեց արորը. չուխի փեշով սրբեց ճակատի քրտինքը յեվ չիբուխը դանդաղ լըց-նելով ասաց.



— Հո աղերք չեն, սալանի ձուներ են

— Բալամ, հող բեչարեն գիր ու ղալամ չի, յա թե չե դաս չի, վոր սերտես ու ջրի նման կարդաս, հողին տղամարդ ա պետք։

— Բա մենք ի՞նչ ենք վոր, — վիրավորված կըտ-րեցի յես։

— Դուք հլա ջահել եք, — ասաց սա յեվ չիբու-խից ծուխը քուլա քուլա բաց թողնելով, ճիպոտեց յեզներին։ Արորը շարժվեց։

— Են հողը հմի Սերգոյի տավարի վոտի տակ յերկաթ ա դառել, վարելը պիտի կերակուր չի, յեր-կաթե կռներով տղամարդ ա պետք, — ավելացրեց հայրս։

— Մենք յերկաթե կռներով տղամարդ ունենք- վրա բերի յես։

— Ո՞վ ա, դո՞ւ, թե Գեվոյի փսլիքոտ տղեն։

— Վոչ յես յեվ վոչ էլ Գեվոյի տղան։

— Բա ո՞վ։

— Տրակտո՛րը, — վստահ շեշտով վրա բերի յես։

— Տրակտո՞ր, բա ո՞վ յերեխեքին տրակտոր կտա, — անտարբեր հարցրեց հայրս։

— Կտան, մենք ընկերությունից կվերցնենք։

— Դե վոր կտան՝ արեք, ո՞վ չի ուզում, քանց Սերգոյի տավարը տրորի, ենա դուք վարեք, թե կբաշարեք։

Համաձայնությունը կայացած եր, պստանի սիր-տըս թնդում եր, ուրախությունից ծուլ-ծուլ եյի լինում յծան վրա։

Եդ գիշերը քունս չտարավ, անկողնիս մեջ ծրա-գրեր եյի մշակում մեր անելիքների մասին։

### ԿՈԼԼԵԿՏԻՎԸ ՎՈՐՈՇԵՑ

Մյուս որը, կոլլեկտիվի հավաքույթի ժամա-նակ, այդ հարց դրի յեվ մի կրակոտ ճառ ասացի՝ մեր հողի վրա պարտեզ տնկելու մասին։ Ճառս պատ-րաստել յեվ, մի քանի անգամ, գիշերը, վերմակի տակ, մտքումս կրկնել եյի։ Պիոներների տրամադրությունը բարձրացավ, միաձայն համաձայնություն տվին իմ ծրա-գրին։ Վորոշվեց աշխատանքներն սկսել վաղվանից։

— Վորքա՞ն ուրախ ցըվեցինք այդ յերեկո...

### ՏՐԱԿՏՈՐԸ ՀՌՆԴՈՒՄ ԵՐ, ԲԱՀԵՐԸ՝ ԶՐՆԳՈՒՄ

— Այ պուճուրներ, ախր ձեր ի՞նչ բանն ա հող վարել. բաղչա տնկել, դուք գնացեք ուսումնարանի հայաթումը ձախ-աջ արեք, — հայրական կատակով պա-տասխանեց մեզ մեքենաոգտագործական ընկերու-թյան նախագահ Սարոն, յերբ յես ու կոլվարը նրա-նից տրակտոր խնդրեցինք։

— Մենք մեր ստացած յեկամուտից վարձը կտանք, — պատասխանեցինք մենք։ Անկյունում նստած կուլակ Աթոն թավ բեխերի տակ քմծիծաղ տվեց, մտքումը ծաղրում եր մեզ. եդ մեզ ավելի յե-ռանդ բերեց, պինդ բռնեցինք Սարո բիձի յախից.



Փշերի հունձը սաստկացավ

— Պիտի տա՛ս վոր պիտի տա՛ս։

— Եյ, պստիկ ախպերներ, — դարձավ մեզ կոմ-բջջի քարտուղարը, — կտանք, համա մեզ սեվերես չանեք հա՜...

Մի ժամ չանցած, տրակտորի յերեք խոփնել թա-փով խրվեցին մեր հողի կուրծքը։

Ամբողջ կոլլեկտիվը հավաքվել եր։ Տղերքի մի

մար վարած հողի կոշտերն եր փշրում, մի մասն ել բահերով վարում եր այն կտորները, ուր տրակտորը չեր բռնել։ Վողջ գյուղը թամաշի յեր յեկել։

— Պա՜հ, պա՜հ, սրանց մտիկ ե, Ստեփանի հողը պիոնի բաղչա են գցում։

— Ադա, տրակտորից հեռու կացեք, կտրաքի։

— Եդ լակոտները մաշինի տակն են ընկնելու,— ձայնում եյին ես ու են կողմից Սերգո աղի յերեխերն ու մյուս կուլակ հարեվանները։

Դե, հասկանալի յեր, նրանց ճամբեն կտրում եյինք։ Իսկ կոմյերիտականներն ու մեր չքավոր հարեվանները հիացմունքով հետեվում եյին մեր աշխատանքին, խրախուսում եյին, քաջալերում.

— Դե, լակոտներ ջան, դոչաղ կացեք,—կատակում եր հայրս։

— Այ ադա Ստեփան, եսհո տղերք չե՞ն, **աղանձի հուներ են**, ես յաշումս քանից բան ո՞վ ա տեսել,—զարմանքով ու հիացմունքով խոսեց Ակեք պապը, յերբ մենք վարը վերջացրած՝ արդեն մարգեր եյինք անում յեվ տունկերի համար փոսեր պատրաստում։

Բահերի զնգոցը, մեր զանգակ ծիծաղը, ուրախ կանչն ու խինդը, յերգն ու սուլոցն ավելացնում եյին ուժն ու յեռանդը մեր մկաններում։

— Վորքա՞ն լավ ե միասին աշխատել, միասին քրտնել, նորից անցավ իմ մտքովը։

### «ԴԱՇՆԱԿՆԵՐԻՆ» ԿՈՏՈՐԵՑԻՆՔ ՅԵՎ ՑԱՆԿԱՊԱՏ ՇԻՆԵՑԻՆՔ

Ագրոկայանից ստացած շիմշատ տունկերը բողբոջել են մեր հողում հավասար շարքերով։ Ծլել ե սերմը մարգերում. բայց, այս գիշեր, մեր նորատունկ պարտեզի միջով յերկու խոր ակոս ե քաշված Սերգո աղի տան ուղղությամբ, յերեվի սայլ են քշել միջով։

Զայրույթով լցված դեպի Սերգո աղեն, այդ որը, ամբողջ կոլլեկտիվով, դիմեցինք դեպի անտառ։ Հետներս տարել եյինք կացիններ, փոքրիկ սղոցներ յեվ ուրագներ։ Մոտիկ մացառուտին հասնելուն պես, սկսեցինք կտրատել մասուրի, սզնի յեվ մամուխի փշոտ թփերը։ Անիրավ փշերը շատերիս ձեռներն արյունալվա արին, բայց ո՞վ եր ուշք դարձնում։

— Ես դաշնակների զորքն ե, ջնջեցե՛ք, ուռա՜... հրամանգեց կոլվարը։

— Ուռա՜...ա՜.. ա՜,—վորոտաց կոլլեկտիվը։ Մեր ձայնը թնդյունով արձանգանքեց մթին անտառում։ Փշերի հունձը սաստկացավ։ Գարնանային զով քամին ցամաքեցնում եր մեր ճակատի քրտինքը, իսկ արեվը քնքշությամբ մեզ եր ժպտում վերեվից։

Արդեն բավական «դաշնակ» եյինք կոտորել։ Ամեն մեկս մի խուրձ պատրաստեցինք, թոկով կապեցինք յեվ ուրախ, տրանգի տալով, թեք սարալանջով վերադարձանք գյուղ։ Յերբ հասանք մեր բաղչին, կոլվարը կոտորած «դաշնակներին» թաղելու հրաման տվեց. մացառների կոթերը խորը թաղեցինք բաղչի շուրջը։

Յերեկոյան արդեն ցանկապատը պատրաստ եր, յեվ մեր բաղչեն ապահովված եր Սերգո աղի տավարից։

— Կատվի վազը մինչեվ մարագն ա,—իրենց մխիթարում եյին կուլակները։ Իսկ Ակեք պապը, յերբ տեսավ ցանկապատն արդեն պատրաստ ե, ուրախ դարձավ նորս.

— Բա վոր ասում եմ աղանձի հուտեր են,—ասաց նա, յերջանկության ժպիտը դեմքին յեվ համբուրեց կողքին աշխատող իր թոռան գանգուրները։— Ա՛յ, սրանք մարդ կդառնան, սրանց պիտի գրողի ճակատին մասաղ,—վերջացրեց Ակեք ամին յեվ մի արհամարհական հայացք գցեց դեպի Սերգո աղի տունը։

### ՋՈՒՐԸ ՀՈՍԵՑ ԴԵՊԻ ՄԵՐ ԲԱՂՉԵՆ

Մայիսյան մի պայծառ առավոտ եր։ Արեվածագի հետ, գյուղի կողքի քրակի յետեվում զրնգում են տասնյակ բահեր ու բրուտներ։ Սերգո աղան շատ ե ծրագիր քաշել յեվ փող հավաքել՝ քրուրի յետեվից առուն գյուղը բերելու, բայց փողը քարին ե քսել, իսկ առուն անհոգ շարունակել իր ճանապարհը։ Իսկ հիմա նա իր ընթացքը փոխում ե մեր հարվածների տակ, ծվռում իր հունից յեվ խոխոջում դեպի գյուղը։



Մեր ցուցադրածը Բերքի տոնին

Յերբ առուն հասցրինք գյուղին նայող բլրի լանջը, մի «ուռա՜» գոչեցինք յեվ գիլ ձայնով յերգեցինք՝

— Գալբար մենք կմղենք, հին աշխարհի դեմ, ով համարձակ ե թող գա մեզ ընդդեմ։

Գյուղի ծայրին շատերը հավաքվել եյին յեվ բացականչություններով, թաշկինակներ շարժելով ու հարայ-հրոցով խրախուսում մեզ։

Յերրորդ որն առուն, արծաթափայլ գոտու նման, բլրի լանջով ձգվում եր մինչեվ մեր նորատունկ բաղչին։

— Ինչքա՜ն լավ ե միասին աշխատել,—մտածում եյինք մենք։

— Ինչքան կտրուկ տղերք ունենք,—հպարտանում եյին մեր մայրերը։

### ՄԵՐ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԱՐԴՅՈՒՆՔԸ

— Ադա, չես իմ կյանքումս հլա՝ բոնից ծմերուկ չա խիար չեմ տեսել,— զարմանում էր Աշեր ամին յեվ գլորում փթթանոց ծմերուկը մեր բաղչի մեջ։

— Բա, պապի, սերմիցն ու լավ մշակելուցն ա, գիտե՞ս ես ամառ ինչ չարչարանք ենք քաշել դրա համար,— բացատրում է մեր պարտեզի եղ. որվա պահակ Գուրգենը։

— Յես ու իմ ատրոճը, ալաճի ճուտեր էր:

Մեր տունկերը փարթամ ճյուղեր ու տերեվներ եյին արձակել յեվ արագ աճում եյին։

Ամբողջ ամառը, գյուղատնտեսի խորհրդով՝ պարարտացրել ու մշակել եյինք բաղչեն։

Այժմ ամառվա վերջն է արդեն։ Բերքի մի մասն արդեն հավաքել ծախսել ենք յեվ ուժեղացրել կոլեկտիվի ֆոնդը։

Օգոստոսին, մի շոգ օր, մեր բոստանը քաղելու որն էր նշանակված։ Ի՞նչ ասես վոր չունեյինք, մեր սեխն ու ծմերուկը, գազարն ու ճակնդեղը, լոբին ու սիսեռը, վարունգն ու պամիդորը քաղելով չեյին վերջանում յեվ նմանը չունեյին ամբողջ շրջանում։

Բերքը հավաքելու որը գյուղացիք նորից եյին թամաշի յեկել։ Նրանք իրենց հիացմունքն արտահայտում եյին բացականչություններով։

— Պահ, ես անտեր տակը (ճակնդեղ) վոնց վոր յեզան գլուխ լինի, կես փութ կլինի, տո,— յեվ զարմանում են անագին կույտերի վրա, ամեն կողմից խնդրում թե՝

— Ի՞նչ կլի, եղ սերմերիցը մեզ էլ տար ցանենք։

Չմերժեցինք, սերմի մի խոշոր մասը բաժանեցինք գյուղացիներին, իսկ բերքը սայլերով տարանք կոլեկտիվի ամբարը։

— Մալաղից տղերը. մեզ պարգեվես արիք,— բացականչեցին կոմբջիջի քարտուղարն ու մեզ տրակտոր տվող Սարո բիձեն։

Բերքի տոնին՝ մեր հաղթական շարքերի առաջից սայլը շրջանի կենտրոնն էր տանում մեր մշակած բույսերի նմուշները, ցուցահանդեսին յեվ մրցանակաբաշխությանը մասնակցելու։ Շրջանի գյուղացիությունը զարմացել էր։ Մենք, վորպես մրցանակ ստացանք մի շարքացան յեվ 50 ռուբլի փող։

Ամբողջ գյուղը շարունակ «պիոների բաղչի» յեվ «սայլանի ճուտերի» մասին էր խոսում։

# ՄԵՐ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ԱՆՑՅԱԼԻՑ

## ՀԻՇՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐ ՊԱՅՔԱՐԻ ՇՐՋԱՆԻՑ

*(Հին պատկոմի նոթերից)*

Հայաստանը նոր էր խորհրդային դարձել։ Դեռ գոյություն ուներ սկաուտական կազմակերպությունը, վորի ազդեցության տակ էր գտնվում աշակերտության մեծ մասը։

Այդ շրջանի մեր աշխատանքը՝ հիմնականում բնորոշվում էր նրանով, վոր մենք աշխատում եյինք կազմակերպել աշակերտությանը, պոկել նրան սկաուտական կազմակերպության ազդեցությունից։

Այդ շրջանից մի դեպք, վառ կերպով մնացել է հիշողությանս մեջ, վորի մասին այստեղ պատմելու յեմ

Առավոտ էր։ Շատ լավ եմ հիշում, բոլորս հավաքվել եյինք մեր շտաբում (վորը գտնվում էր Աբովյանի վրա, ներկայումս այնտեղ տեղավորված է ՄՈՊՐ-ի Կոմիտեն)։ Դպրոցներում կազմակերպություն հիմնելու համար ստանում եյինք ցուցմունքներ ու հրահանգներ։ Դուրս ենք գալիս։ Փողոցով անցնում ենք պատկոմին հատուկ ուրախությամբ։ Բոլորս էլ 15—16 տարեկան պատանիներ ենք։ Քայլում ենք փողոցով, խոսում, ուրախանում։ Մեկ էլ, մեր ընկերներից Հարեթը բացականչեց.

— Տղերք, չվախենաք գիմնազիստներից։

Բոլորս միասին պատասխանում ենք.

— Ապա՞ թող համարձակվեն...

Խմբերի բաժանվելով անցնում ենք զանազան դպրոցներ աշխատանքի։ Վորոշ տեղերում ունենում ենք հաջողություններ, վորոշ տեղերում վոչ։

Ժամի 11-ն է։ Վերադառնում ենք. ճանապարհին հանդիպում ենք ընկ. Փանոսին ու Հարեթին։

— Հը՛, տղերք, վո՞նց անցկացրիք,— հարցրինք մենք։

— Տղերք ջան, է՛լ մի հարցնեք, գնանք շտաբը բոլորին կպատմեմ,— պատասխանեց Հարեթը։

Այսպես խոսելով անցնում եյինք Նազարյան փողոցով, լսելով հազար ու մի ածականներ — «պատկըրծողներ» յեվ այլն։

Շտաբումն ենք։ Հարեթը պատմում է իր ունեցած «հաջողությունների» մասին։

— Ընկերներ, դեռ գիմնազիայի դուռը չհասած՝ շատ բան լսեցի, բայց բանի տեղ չդրեցի։ Ներս մտա թե չէ, վրա տվին։ Բղավել, գոռալ, բարով խփել, էլ վո՞րը պատմեմ։ Բարկությունս յեկավ, մեկին ձեռքս առա, տո՛ւր թե կտաս։ Մի լավ ջարդեցի, համա յես էլ կերա։ Վերջապես, Փանոսի օգնությամբ ազատվեցի նրանց ձեռքից։ Համա վերարկույիս փեշի կեսը կտրել տարել եյին։ Էլ ի՞նչ ասեմ, լավն էն է, վոր վիզս պրծել եմ. Բայց յես Կոպոն*) չինեմ, յեթե այդ դպրոցում կազմակերպություն չստեղծեմ։

Յեվ այդպես էլ յեղավ։

Այդպիսի դմբոցներ ուտելը շատերիս համար սովորական բան էր դառել։ Սակայն, առանց մի րոպե տատանվելու, շարունակում եյինք մեր գործը։

Պայքարի մեծ շրջան է անցել պիոներական մեր կազմակերպությունը։ Պայքար սկաուտական կազմակերպության, նրա ազդեցության տակ գտնվող աշակերտության դեմ։

Իսկ այսօ՞ր .. վեց տարի հետո՞... Մեր բանակը շատ է ուժեղացել, հզորացել։ Խուլ գյուղերում նույնիսկ մենք ունենք մեր կազմակերպությունները։

**Ս. ՄԱՆԱՍՅԱՆ**

*) Հարեթի ավելորդ անունն էր։

ՄԻՇԻԿ

# ԹՌՈՒՑԻԿ ՀԻՇՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐ

Ի՞նչպես չհիշել այն գիրմարդկային ջանքերը, վոր արեց, 1921 թվին, հազիվ մի քանի տասնյակի հասնող պատանիների խումբը՝ սովից ու տաճկական արշավանքներից քայքայված Լենինականում։

Յես դեռ շատ փոքր էի, հազիվ 12 տարեկան, յերբ քաղաքային այգու պատին կպցրած տեսա հետևյալ հայտարարությունը.

**ԿԱԶՄԱԿԵՐՊՎՈՒՄ Է ՊԱՏԿՈՄՆԵՐԻ (ԿՈՄՈՒՆԻՍՏ ՍԿԱՈՒՏՆԵՐԻ) ԽՄԲԱԿ։ ՑԱՆԿԱՑՈՂՆԵՐԸ ԹՈՂ ՑՈՒՑԱԿԱԳՐՎԵՆ ԱՐԱԲԱՋՅԱՆԻ ՅԵՎ ԿՈՏԻԿԻ ՄՈՏ**

Յես ապշեցի. թեպետ պատկոմական կազմակերպության մասին պարզ գաղափար չունեի, բայց լավ ճանաչում էի թե Արաբաջյանին և թե Կոտիկին, իբրև հայտնի սկաուտապետների։ Իմ մանուկ գլուխը չէր կարողանում հասկանալ, թե դրանք վոնց կոմունիստ դարձան։

Այնուամենայնիվ գրվեցի։

Յերկու ամիս չէր անցել, յերբ Յերևանից յեկավ Ա. Բզնունին։ Սկսվեց խիստ զտում և բոլոր սկաուտապետներն էլ դուրս շպրտվեցին. պատկոմներից մի քանիսն էլ, Ամերկոմի «անուշ կաթով» հրապուրվելով, գնացին նրանց յետևից։ Մնացինք 20—25 պատանիներ, վորոնցով սկիզբ դրվեց Լենինականի կազմակերպության I-ին կոլլեկտիվին՝ «Սպարտակի» անվան։

Այդ կոլլեկտիվն էր, վոր, հսկայական ճիգեր գործ դնելով, հանդիսացավ Լենինականի այժմյան 5000-նոց կազմակերպության միջուկը, իր շուրջը համախմբելով պատանեկությունը։

Այդ կոլլեկտիվի անդամներն այժմ պիոներական պատասխանատու աշխատանք են տանում։

Մեր դեմ պայքարելու համար ինչ միջոցի ասես վոր չդիմեցին սկաուտները — ծեծ, բոյկոտ, ծաղր և այլն։ Բայց չընկճվեցինք։ Այդ փոքրիկ կոլլեկտիվն էր, վոր արհամարհելով ամեն մի դժվարություն, վոտով կտրեց անցավ Ալագյազի վրայից Յերևան և վերադարձավ կառավարությունից ստացած դրոշակով և համազգեստներով (ֆորմաներով)։ Դրանից հետո մեր թիվն սկսում է աճել։ Յեվ 1922 թվին, Շիրականալի կառուցման աշխատանքներին անցնելու ժամանակ, պիոներական կազմակերպությունն արդեն դուրս է գալիս իր կուռ շարքերով։

Բացվում են հրահանգչական դասընթացքները, վորոնք տալիս են պատրաստված ղեկավարներ մեր կազմակերպությանը։ 1922 թվի վերջին սկսում ենք կազմակերպել դպրոցական պատանեկությանը։

Սկաուտները կամաց-կամաց նահանջում են, և 1923 թվի մեր էքսկուրսիան դեպի Ղարաքիլիսա և մեր Հոկտեմբերականը ջախջախիչ հարված են հասցնում սկաուտներին։ Թե էքսկուրսիան և թե մանավանդ Հոկտեմբերականը ցույց տվեցին, թե ինչքան է աճել ու հզորացել մեր կազմակերպությունը, ինչքան կենսունակ է նա։

Պետք է ասել, վոր այդ ժամանակ մենք մեծ ուշադրություն էինք դարձնում մեր կազմակերպության արտաքինի, ցուցադրական կողմի վրա։ Սկաուտական կազմակերպությունը պատանիներին այդ ճանապարհով էր գրավում իր շարքերը։ Մեր տարած ցուցադրական աշխատանքն այն միջոցներից մեկն էր, վոր օգնեց մեզ քայքայելու սկաուտական կազմակերպությունը։

1924 թիվն էր։ Կայանում է պատկոմական կազմակերպության II-րդ համագումարը։ Կոմյերիտմիությունն ամբողջովին վերցնում է մեր կազմակերպության անմիջական ղեկավարությունն իր վրա։ Յերբեք չի կարելի մոռանալ այն բուռն վոգևորությունը, վորն առաջացրեց այդ լուրը պատկոմների մեջ։

# ՎԵՑ ՏԱՐԻ

Վեց տարի յե անցել այն օրից, յերբ հիմնվեց պատկոմական (պիոներական) կազմակերպությունը։ Սկզբնական շրջանում, մեր պիոներները շատ դժվարին պայմաններում էին աշխատում։ Մեր աշխատանքներին ուղղություն, ցուցմունքներ տալու համար չունեինք գրականություն։ Չկային գրադարան-ընթերցարաններ, խաղասենյակներ և այլն, վորտեղ պիոներները հնարավորություն ունենային կազմակերպել իրենց ազատ ժամանցը։ Պիոներներից շատերը դուրս էին մնացել դպրոցներից։ Սկաուտական կազմակերպության գոյությունն էլ, այն տարիներին, խոչընդոտներ պիոներների աշխատանքների համար։

Այս բոլոր դժվարություններին կարողացավ հաղթահարել մեր կազմակերպությունը։ Այսօր մենք ամեն տեսակի հնարավորություններ ունենք տանելու մեր կազմակերպության աշխատանքները։

Սակայն, մեր կազմակերպության 7-րդ տարեդարձին, չպիտի մոռանանք մեր պիոներ—յեղբայրներին, վորոնք, կարմիր գծից են կողմը, բուրժուազիայի սպառնալիքի տակ, տանում են իրենց աշխատանքը, օգնելով հեղափոխական բանվորների ու գյուղացիների պայքարին։ Ամեն կերպ օգնենք նրանց։ Անդամագրվենք ՄՈՊՐ-ին։ Կապ հաստատենք նրանց հետ։

Կեցցե մեր կազմակերպության 6 տարին։

Կեցցեն պայքարող մեր յեղբայրներն ամբողջ աշխարհում։

Պասկոր Եգիզարյան

# ԼԵՆԻՆՅԱՆ ԿՈՄՍՈՄՈԼԸ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԲԱՆԱԿԻ ԱՌԱՋՆՈՐԴՆ Է




Հ. ՍՏԵՓԱՆՅԱՆ

# ԱՐՏԱՍԱՀՄԱՆՈՒՄ ՊԱՅՔԱՐՈՂ ՄԵՐ ՑԵՂԲԱՅՐՆԵՐԻ ՄԱՍԻՆ

*Այս տարի, ամբողջ աշխարհի պիոներները, բանվոր յեվ գյուղացի պատանիների հետ միասին, տոնեցին Միջազգային Պատանեկական 7-րդ շաբաթը։*



*Պիոներների յերթը Մոսկվայում*

*Ինչքա՛ն լավ անցկացավ այդ տոնը մեզ մոտ։ Կազմակերպեցինք շքերթ, հանդեսներ, մեր ունեցած նվաճումների մասին պատմեցինք մեր մեծ ընկերներին, բանվորներին ու գյուղացիներին։ Մենք հանդիսավոր խոստում տվինք՝ ավելի տոկունությամբ շարունակել մեր աշխատանքը, կատարել Իլյիչի մեզ տված պատգամները։*

*Վո՞ր պիոների սիրտը չեր թնդում բերկրանքից, յերբ՝ հազարավոր պատանիների յեվ աշխատավորների առաջ արտասանում եր մեկիկ-մեկիկ հանդիսավոր խոստման խոսքերը։ Այդ պահին վո՞ր մեկը մեզանից հպարտությամբ չզգաց, վոր ինքը ԽՍՀՄ պիոներների 2 միլիոնանոց բանակի անդամն ե, վոր այդ օրը, իրեն նման 2 միլիոն պատանիներ նույնպես իրենց պատրաստակամությունը հայտնեցին հավատարիմ մնալու Իլյիչի պատգամներին, միշտ պատրաստ լինելու բանվոր դասակարգի պայքարի համար։*

*Խորհրդային Միության մեջ պիոներներն ամենալայն հնարավորություններն ունեն կազմակերպելու յեվ առաջ տանելու իրենց աշխատանքը։ Բանվորական պետությունը յեվ մեր յերկրի հասարակական կազմակերպությունները օժանդակում են մեզ։ Դրա շնորհիվ ե մեր կազմակերպությունն այդքան հզոր, դրա շնորհիվ ե, վոր նա իր շարքերում հարյուր հազարավոր պատանիներ ե հաշվում։*

*Սակայն, այդպես չե կարմիր գծից են կողմը, կապիտալի աշխարհում։*

*Փորձենք մտքով ճանապարհորդել դեպի կապիտալի յերկրները, զը՜նենք այցի արտասահմանի մեր յեղբայրների՝ պիոներների մոտ։ Ի՞նչ կտեսնենք։*

*Այնտեղ պիոներները չեն կարող յերթերի ժամանակ ազատ կերպով պարզել իրենց կարմիր դրոշակը, կրել պիոներական վզկապ, իրենց հավաքույթներն ունենալ յեվ այլն։ Այդ բոլորի համար նրանք յենթակա յեն հալածանքի, ծեծի յեվ նույնիսկ բանտարկության։*

*Չնայած այդ բոլորին, պիոներներն առանց վհատվելու աշխատում են յեվ պայքարում բանվոր դասակարգի հաղթանակի համար։*

*Արտասահմանի մեր յեղբայրները, իրենց փոքրիկ ուժերով, օժանդակում են կոմունիստական կուսակցության ու կոմսոմոլի աշխատանքին։ Թռուցիկ ե հարկավոր փակցնել, լրագիր տարածել, կոչեր գրել յեվ այլն—դրանց համար պիոներները միշտ պատրաստ են։*

*Այդ աշխատանքի համար նրանք միշտ հալածանքի են յենթարկվում։ Օրինակ, այս տարվա փետրվարի 10-ին, Ֆրանսիայում, դատարանը, 12 տարեկան Անդրե Օրենին դատապարտեց 9 տարվա բանտարկության՝ յերեխաների «ուղղիչ գաղութում»։ Իսկ ի՞նչ եր Անդրե Օրենի «հանցանքը»։ Նրա «հանցանքը» կայանում եր նրանում,*



*Չինացի պիոներ*

*վոր տարածել եր կոմունիստական կուսակցության լրագիրը։*

*Վերցնենք Անգլիան։ Անգլիայի*

պիոներական կազմակերպությունը, ինչպես ժողովուրդն է ասում, պետք երայց ճարել է։ Ձեզանից վոչ վոք յերևի դեռ չի մոռացել, թե ինչպիսի մեծ աշխատանք կատարեցին պիոներները՝ ածխահատ բանվորների 1926 թվի հերոսական գործադուլի օրերին։ Այդ իսկ պատճառով, մանավանդ վերջերս, պիոներական կազմակերպությունը լուրջ մտահոգություն է պատճառում Անգլիայի տերերին—կապիտալիստներին, բրիտանյա յեվ «մարդասեր»



*Ամերիկայի բուրժուաների կարծիքով՝ այսպես է խորհրդային դպրոցը*

յեպիսկոպոսներին ու լորդերին։ Նրանք միացյալ ճակատ են կազմել պիոներական կազմակերպության դեմ պայքարելու համար։ Ի՞նչ խոսք, վոր այս գործին անպայման ոգնում են «հայրենիքի յեվ թագավորի» հավատարիմ զավակները՝ սկաուտները։ Անգլիայի կառավարությունն ամեն կերպ խանգարում է պիոներական կազմակերպության աշխատանքը։ Նա ձերբակալում յեվ տուգանում է պիոներների ղեկավարներին։ Նույնիսկ հատուկ օրենք է մշակված, վորի համաձայն, յեթե նկատվի, վոր մի պիոներ «քաղաքական» աշխատանք է տանում, նրան նույնպես սպառնում է բանտ ու տուգանք։

Նույն ակտիվ մասնակցությունը՝ բանվոր դասակարգի մղած պայքարին՝ մենք նկատում ենք նայեվ Ամերիկայի պիոներների կողմից։ Մի քանի անգամ աշխարհի բոլոր լրագրներում գրվեց, թե ինչպես պիոներները մասնակցել են Պասսայիկի (տեքստիլ արդյունաբերության կենտրոնը) ջուլհակների գործադուլին։ Օրինակ, թերթերում գրվեց, վոր պիոներները հավաքել են պատանի ջուլհակներին յեվ մի հսկայական ցույց են կազմակերպել։ Այդ ցույցին մասնակցել են 15 հազար պատանի բանվորներ։

Հիմա գնանք Գերմանիա։

Գերմանիայի պիոներական կազմակերպությունը, վորը «Պատանի Սպարտակ» է կոչվում, աշխարհի ամենահին պիոներական կազմակերպությունն է։ Նա կազմակերպվել է 1920 թվին։ Գերմանիայի «Պատանի Սպարտակը», կոմսոմոլի անմիջական ղեկավարությամբ, մասնակցել է նույնիսկ բանվորների կազմակերպած զինված ապստամբություններին։ 1923 թվին, յերբ Գերմանիայում փորձ արին զինված ապստամբության միջոցով տապալել



*Իսկ իրենց դպրոցն իրականում այսպես է*

կապիտալիստների կառավարությունը, պիոներները մասնակցություն ցույց տվին այդ պայքարին։ Օրինակ, Համբուրգում, բանվորների հետ միասին, պատնեշների վրա կանգնած կրակում եյին նայեվ պիոներները։ Աղջիկ պիոներները խնամում եյին վիրավորներին։

Մի քանի խոսք դպրոցների մասին։ Արտասահմանի պիոներական բոլոր կազմակերպությունները պայքարում են բուրժուական դպրոցի դեմ։ Պատճառը պարզ է։ Պետք է քայքայել այդ դպրոցը, վորը բանվորների յերեխաներից կապիտալի համար ստրուկներ է պատրաստում։ Յեվ պիոներները պայքարում են՝ այդ դպրոցներից ձերբ. կրոնական դասերը, թագավորների ու բուրժուական հերոսների մասին յեղած պատմությունների դասավանդումը վերացնելու համար։ Նրանք նույնպես պահանջում են, վոր դպրոցներում աշակերտական ինքնավարություններ կազմակերպվեն, հնարավորություն տրվի պիոներական կազմակերպությանը դպրոցում ազատ աշխատելու։

Վերջերս, պիոներական կազմակերպությունը Չինաստանում շատ արագ կերպով զարգանում է, նա իր շարքերում մի քանի տասնյակ հազար պատանիներ է հաշվում։ Դժվար է նրանց աշխատանքը, վորովհետեվ չինական պիոներները նոր են կազմակերպվել, չունեն աշխատանքի փորձ։

Յերբ այսոր Խորհրդային Միության պիոներական կազմակերպությունների առաջ խնդիր է դրվում կապ հաստատել կարմիր գծից են կողմը պայքարող ու աշխատող իրենց յեղբայրների հետ, նրանք չպիտի մոռանան իրենց չինացի ընկերներին։ Չին պիոներների հայրերն ու յեղբայրներն այսոր պայքարում են չինացի յեվ օտարյերկրյա կապիտալիստների դեմ՝ Չինաստանի ազատության, աճող սերնդի յերջանիկ կյանքի համար։ Մենք պետք է ոգնենք այդ պայքարին, միշտ հիշեցնենք նրանց, վոր Խորհրդային Մեծ Միության պիոներները նրանց հետ են։

# ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ



Չինական պիոներներ

## ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆԸ ՉԻՆԱՍՏԱՆԻ ԼԻ-ԼԵՆ ՔԱՂԱՔՈՒՄ

Լի-լենի պիոներական կազմակերպությունը հիմնվել է այս տարվա հունվար ամսին: Կազմակերպությունը բաժանված է 10 կոլլեկտիվների: Լի-լենի կոլլեկտիվի կովարներից մեկը Սիո-Յու-Շինն է, վորը սովորում է կանանց դպրոցում: Նա շատ ակտիվ աշխատող է և լավ ղեկավարում է իր պիոներների աշխատանքը:

童子軍

ՏՈՒՆ-ՑԶԻ-ՁՅՈՒՆ ՊԻՈՆԵՐ

Վերջերս նրանք յերեկույթ եյին կազմակերպել: Ծրագրի մեջ մտնում եյին նաև «Յերիտասարդ Գվարդիայի», «Ազգային հեղափոխության հիմնի» և «Բանվորների, գյուղացիների ու զինվորների միության հիմնի» յերգերը: Յերբ հեղափոխական բանակը գրավեց Լի-Լենը, պիոներները մեծ վոգևորությամբ դիմավորեցին նրանց: Վլադիմիր Իլյիչի մահվան տարեդարձին, պիոներները տարածում եյին թռուցիկներ, պլակատներ, ցույցի ժամական լոզունգներ եյին բաց թողնում:

Միտինգում խոսեց նաև պիոներների ներկայացուցիչը:

Մեր լոզունգն է —«Համախմբվենք, կազմակերպվենք, օգնենք մեր հայրերին, մայրերին, մեր յեղբայրներին ու

我们準備!

ՈՒ-ՄԵՆ — ՅԵՂԻՐ
ՏԶՈՒՄ-ԲԵՅ — ՊԱՏՐԱՍՏ

քույրերին՝ սեր թշնամիների — իմպերիալիզմի դեմ մղվող պայքարում»:

Սա յե պատանի պիոներների մարտական լոզունգը:

Այս լոզունգը պիոներներս պիտի տարածենք աշխատավորական Չինաս-

時時準備

ՍԻ-ՍԻ — ՄԻՇՏ
ՏԶՈՒՄ-ԲԵՅ — ՊԱՏՐԱՍՏ

տանի պատանեկության մեջ և նրանց պիտի համախմբենք մեր կարմիր դրոշի շուրջը:

Ցան-Մու

## ԲԱՆՏԸ ՄԵԶ ՀԱՄԱՐ ՍԱՐՍԱՓԵԼԻ ՉԵ

(Անգլիական պիոներների գրած նամակից)

Պիոներներից մեկը, յերբ դպրոցում առաջարկում է մի տղայի պիոներական կազմակերպության մեջ մտնել, ստացել է հետևյալ պատասխանը. «պիոներ լինել՝ նշանակում է բանտ նստել յեվ կորցնել յուր պատիվը»:

Դրան մենք պատասխանում ենք — ընդհակառակը, հարկավոր է հպարտանալ նրանով, վոր բանտ ես նստում քո գաղափարների համար:

Ընկերական բարևներով՝ Ջեննի Բրաուն յեվ Հերբերտ Վիլլիամ Հայգ

Պրոլետարական յերեխան կապիտալի աշխարհում



—Ոգնեցեք մեզ!



Հաց ենք ուզում

# Պ Ի Ո Ն Ե Ր Ի Ա Ն

## ՀԵՂԱՓՈԽԱԿԱՆ ՉԻՆԱՍՏԱՆԻ ՄԱՅՐԱՔԱՂԱՔ ՈՒԽԱՆԻ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ՀԵՌԱԳԻՐԸ

**ՈՒԽԱՆ — ՄՈՍԿՎԱ**

*Ուխանի պիոներները, մայիսի մեկին, իրենց շարքերի զորատես կատարեցին։ Մենք 30 հազարից շատ ենք։ Մեր կազմակերպության մեջ մանուկների յերեք հինգերորդն աշխատում ե գործարաններում, մեկ հինգյերորդը խանութներում և մեկ հինգերորդն էլ աշակերտներ են։*

*Մենք հույս ունենք, վոր մոտ ապագայում, միջազգային կապիտալիզմի գերեզմանի վրա, մենք հնարավորություն կունենանք մեր հաղթանակը տոնելու։*




*Անգլիական պիոներների նշանը*

**ԱՆԳԼԻԱԿԱՆ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ՆԱՄԱԿԸ**

*ԲԱԳՎԻ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ «ՍՊԱՐՏԱԿ» ԿՈԼԼԵԿՏԻՎԻՆ*

*Թանգագին ընկերներ!*

*Մենք ստացանք ձեր ուղարկած նամակն ու պատի լրագիրը և շնորհակալություն ենք հայտնում։ Ընկ. Թեկ Սմիթը պատմեց մեզ Խորհրդային Ռուսաստանի բանվորների կյանքի մասին։*

*Մենք ավելի ուժեղացրել ենք մեր աշխատանքը՝ Խորհրդային Անգլիա ստեղծելու համար։*

*Տեսնելով ձեր լրագիրը, մենք էլ ըսկսեցինք պատի լրագիր հրատարակել։ Նրա №-ից կուղարկենք ձեզ։*

*Ուղարկում ենք մեր կազմակերպության՝ «Պատանի Ընկերների Միության» նշանը։ Խնդրում ենք ուղարկել մեզ ձեր կազմակերպության նշանը։*

*Կեցցե Հոկտեմբերյան Հեղափոխությունը։*

*Կեցցեն ԽՍՀՄ պիոներները։*

*Կեցցե կոմյերիտմիությունը։*

*Ցեղբայրական վողջույններով*

**Ռոզա Ռասուլ**




*Անգլիական պիոներների միտինգը*



*Կալմիկ պիոներներ*

# ՊԻՈՆԵՐՆԵՐԻՆ

## ՉԻՆԱՍՏԱՆԻ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

*Շատ է խոսվում ու գրվում Չինաստանի մասին. բոլորս էլ հետաքրքրվում ենք այնտեղ կատարվող դեպքերով. մեր պիոներն էլ պիտի իմանա, թե ի՞նչ է տեղի ունենում այնտեղ, ինչո՞ւ հարյուր հազարավոր ու միլիոնավոր մարդիկ կռվում են իրար դեմ, ի՞նչ են ուզում նրանք։*

### ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ՊԱՏՃԱՌՆԵՐԸ

*Չինաստանն աշխարհի ամենաբազմամարդ յերկիրն է։ Այնտեղ բնակվում է 400 միլիոներից ավելի մարդ։*

*Չինաստանի աշխատավորներն ապրում են ամենածանր պայմաններում։ Գյուղացիները, վորոնք կազմում են ժողովրդի մեծամասնությունը, գտնվում են կալվածատերերի յեվ գեներալների ծանր լծի տակ. իսկ քաղաքներում բանվորները, ամբողջ օրն*



*Իմպերիալիստների լեզուն Չինաստանում*

*աշխատելով, չափազանց քիչ աշխատավարձ են ստանում յեվ ապրում են շատ վատ։*

*Գործարաններում աշխատում են մեծ թվով յերեխաներ. կապիտալիստները համարյա ձրի յեն աշխատեցնում նրանց։*

*Յեվրոպայի, Ամերիկայի յեվ Ճապոնիայի խոշոր կապիտալիստները, վորոնք իրենց ձեռքն են վերցրել արդյունաբերության գլխավոր ճյուղերը, յերկրից դուրս են տանում չինացի բանվորների յեվ գյուղացիների աշխատանքի արդյունքի ամենամեծ մասը։*

*Ահա թե ինչու Չինաստանում հեղափոխություն սկսվեց, վորը, գնալով ավելի ու ավելի լայն չափով տարածվում է ամբողջ յերկրում յեվ նորանոր հաղթանակներ է տանում։*

*Այդ հեղափոխության ղեկավարներն են Գոմինդան կուսակցությունը, վորի հիմնադիրն է յեղել Սուն-Յաթ-Սենը, յեվ Չինաստանի կոմունիստական կուսակցությունը։*

### ԲՈՒՐԺՈՒԱԶԻԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ՄԵՋ

*Գոմինդան կուսակցության անդամների մեծ մասը բաղկացած է բանվորներից, գյուղացիներից յեվ ուսանողներից, բայց նրա մեջ կան նաև բուրժուաներ։ Դա նրանից է, վոր* **Չինաստանի հեղափոխությունն ամենից առաջ ուղղված է օտարերկրյա իմպերիալիստների — Անգլիայի, Ամերիկայի, Ճապոնիայի, Ֆրանսիայի տիրապետության դեմ։** *Չինաստանի բուրժուազիան ցանկանում է ինքն ավելի մեծ չափով շահագործել չին բանվորներին, իսկ օ-*



*Բանվորական ցույց*

*տարերկրյա բանկիրներն յեվ կապիտալիստները խանգարում են դրան։ Ահա թե ինչու Չինաստանի բուրժուազիան յեվս ժամանակավորապես գընում է հեղափոխության հետ։*

*Սակայն, բուրժուազիան մինչեվ վերջը հեղափոխության հետ գնալ չի կարող։*

*Հեղափոխության ընթացքում բանվորներն առաջադրում են իրենց պահանջները, վորոնք ուղղված են վոչ միայն օտարերկրյա իմպերիալիստների, այլեվ իրենց յերկրի բուրժուազիայի դեմ։ Յեվ այդ ժամանակ բուրժուազիան, ամենից առաջ խոշոր բուրժուազիան, սկսում է հեռանալ*



*հեղափոխությունից յեվ գնալ հեղափոխության դեմ։*

*Նույնը տեղի յե ունենում նայեվ Չինաստանում։*

### ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐՆ ՈՒ ԲՈՒՐԺՈՒԱԶԻԱՅԻ ԴԱՎԱՃԱՆՈՒԹՅՈՒՆԸ

*Վերջին մի քանի ամսվա ընթացքում հեղափոխությունը խոշոր հաջողություններ ունեցավ։ Ազգային (Կանտոնի հեղափոխական կառավարության) բանակները գրավեցին կենտրոնական Չինաստանի խոշոր մասը, վորի մեջ նայեվ Հանկոու յեվ Շանհայ մեծ քաղաքները, վորոնք Չինաստանի արդյունաբերական կենտրոններն են։ Հեղափոխության հաջողությունների հետ միասին, միաժամանակ աճում եր նայեվ բանվորության յեվ գյուղացիական մասսաների ակտիվությունը յեվ պահանջները, մեծանում եր Կոմունիստական կուսակցության դերը (վորը Չինաստանի բանվորների կուսակցությունն է),* **հեղափոխության ղեկավարությունն ամբողջովին անցնում էր Գոմինդան կուսակցության ձախ թևի ձեռքը, վորը չին աշխատավորության շահերի արտահայտիչն է յեվ վորի վրա ուժեղ է կոմունիստական կուսակցության**



*Ձերբակալում են բանվորներին*

**ազդեցությունը,** *իսկ Գոմինդանի աջ թեվը (բուրժուազիան) չեզոքացվում եր, հեռացվում եր ղեկավարությունից։*

*Բուրժուազիան տեսնում է, վոր հեղափոխությունն արդեն ուղղվում է նայեվ իր դեմ։ Յեվ սկսում է դավաճանել հեղափոխությանը։*

Այդ դավաճանությունը վորոշ կերպով յերեվաց, յերբ ազգային կառավարության բանակների հրամանատար Չան-Կայ-Շին, վորը Գոմինդանի աջ թևի առաջնորդն էր, Շանհայում յեվ Նանկինում իշխանությունն իր ձեռքը վերցրեց յեվ սկսեց կոտորել բանվոր-



Հեղափոխական բանակի զորահանդես Ուխանում

ներին։ Չան-Կայ-Շիի շուրջն են համախմբված Գոմինդան կուսակցության աջ տարրերը։ **Չան-Կայ-Շին չինական հակահեղափոխական խոշոր բուրժուազիայի ներկայացուցիչն է:** Չան-Կայ-Շին Նանկին քաղաքը հայտարարել է իր մայրաքաղաքը։

Այժմ հեղափոխության կենտրոնն է Հանկոու քաղաքը (վորը վերանվանվել է Ու-Խան)։ Այնտեղ են գտնվում Ազգային կառավարությունը, Գոմինդանի յեվ կոմկուսակցության կենտրոնական կոմիտեները։ Նրանք են վարում հեղափոխության



Ռազմական ավտոմոբիլներ

ղեկն ընդդեմ օտարերկրյա իմպերիալիստների, չինացի կալվածատեր-գեներալների յեվ հակահեղափոխական բուրժուազիայի։

## ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ԹՇՆԱՄԻՆԵՐՆ ՈՒ ԲԱՐԵԿԱՄՆԵՐԸ

Հեղափոխության գլխավոր յեվ ամենաուժեղ թշնամին իմպերիալիստական պետություններն են։ Չինական հեղափոխությունն ամենից շատ նրանց է վնասում։ Նրանք զրկվում են իրենց շահագործման ամենախոշոր աղբյուրներից մեկից։ Դրա համար էլ, նրանք բոլոր միջոցներով կռվում են հեղափոխության դեմ։ Նրանց **հակահեղափոխական ռազմանավերը կանգնած են Չինաստանի հեղափոխական նավահանգիստներում յեվ յերբեմն գործի են դնում իրենց թնդանոթները՝ ավերածություն ու մահ պատճառելով:**

Իմպերիալիստները միաժամանակ օգնում են հակահեղափոխական գեներալներին, վորոնք նրանց գործակալներն են (Չանգ-Ցո-Լին, Չան-Ցուն-Չան, Սուն-Չուան-Ֆան, Ու-Պեյ-Ֆու), վորպեսզի նրանք ավելի հաջողությամբ կռվեն հեղափոխության դեմ։

Չինական հեղափոխությունն ունի նայեվ բարեկամներ։ Հեղափոխու



ՉԻՆԱԿԱՆ ՊԼԱԿԱՏ—Գիշատիչ իմպերիալիզմը Չինաստանում

թյունը հարվածներ է հասցնում միջազգային իմպերիալիզմին, վորը համաշխարհային բանվոր դասակարգի թշնամին է։

**Դրա համար էլ, բոլոր յերկրների բանվորները Չինական հեղափոխության բարեկամներն են: Հեղափոխության բարեկամն է նայեվ մեր Խորհրդային Միությունը, վորը Սոցիալիզմի ամրոցն է։ Հեղափոխության բարեկամներն են նայեվ ամբողջ աշխարհի ճնշված ժողովուրդները, վորոնք իրենք յեվս պայքարում են իմպերիալիզմի լծից ազատագրվելու համար։**

## ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅՈՒՆԸ ԿՀԱՂԹԱՆԱԿԻ

Չինական հեղափոխությունը՝ չընայած բոլոր տեսակի արգելքներին՝ հաղթանակում է։

Մեր բոլորիս պարտականությունն է մեր ուժերի ներածին չափ օգնել չին բանվորներին ու գյուղացիներին իրենց պայքարում։ Խորհրդային Միության ամեն մի պիոների պարտականությունն է օգնել իր չինացի յեղբայրներին։ Կապ պահպանել նրանց հետ, իր աշխատանքի փորձը տալ նրանց, վոգեվորել նրանց իրենց պայքարում, նյութապես օգնել նրանց, վոչինչ չխնայել նրանց հեղափոխական պայքարի հաջողությանը նպաստելու համար։

**Չինական պիոներների, ամբողջ աշխարհի բանվոր յեվ գյուղացի պատանիների հետ միասին պայքարելու, մեռնող կապիտալիզմի գերեզմանի վրա համաշխարհային հոկտեմբերի տոնը տոնելու համար՝ ՄԻՇՏ ՊԱՏՐԱՍՏ:**

**Գ. Անդրեասյան**

# ԲԱԳՎԻ ՄԵՐ ԳԱՂՏՆԻ ՏՊԱՐԱՆԸ

(ԸՆԿ. ՅԵՆՈՒԿԻՁԵՅԻ ՀԻՇՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԻՑ)

*Ընկ. Յենուկիձեն, ցարի յեվ կապիտալի տիրապետության ծանր ու սեվ տարիներին, բոլշեվիկների կուսակցության գաղտնի տպարանների կազմակերպիչն ե յեղել։ Այստեղ բերում ենք նրա հուշերից մի կտոր, թե ինչպես մի խումբ ընկերներով, արտասահմանից գաղտնի կերպով հեղափոխական գրականություն եյին ստանում տարածելու համար, յեվ հետո, ինչպես նրանք Բագվում կազմակերպեցին գաղտնի տպարան։*

*Պիոներներ! կարդացեք այս հիշողությունները, վորպեսզի կարողանաք համեմատել անցյալը ներկայի հետ, յերբ նախկին ցարական Ռուսաստանի բոլոր տպարաններն ու թուղթը բանվոր դասակարգի յեվ նրա պետության սեփականությունն ե դարձել։*

Մենք կարողացանք հաջողացնել արտասահմանի գրականության առաջին կապոցներն ստանալ 1900 թվի վերջին. այդ նույն թվին մենք կազմակերպեցինք առաջին գաղտնի տպարանը, վորը, հետագայում աճելով, դարձավ մեր կուսակցության կենտրոնի ամենագլխավոր կենտրոնական տպարանը։ **Կար ընկերների մի խումբ, վորն իրեն նպատակ եր դրել աշխատել բացառապես ընդհատակյա տպարանների կազմակերպման յեվ արտասահմանից գրականություն ստանալու ասպարիզում: Այդ խմբի մագիկ—վոչ ավելի 15—18 հոգուց—իրար հետ կապված եյին ընկերական սերտ կապով:** Այդ խմբի ընկերները **մեկ մեկու խոսք եյին տվել՝ հասնել ձգտած նպատակին** և վոչնչով չտարվել, ինչ տեսակ պայմաններ ել վոր լինեն:

Գրականությունն ուղարկվում եր Մարսելից, ֆրանսիական շոգենավով, և մեր ընկերներից մեկը պիտի դիմավորեր շոգենավը։ Մեզ վաղորոք հայտնում եյին, թե ինչ շոգենավով և գալու գրականությունը։ Կապ եր հաստատվում շոգենավի հետ։ Յերբ մթնում եր, անլեգալ գրականությունը, չծըծվող թղթե ծանրոցներով, գցվում եր ծովը, և մեր ընկերները, մաքսանենգների օգնությամբ, վորսում եյին այդ ծանրոցները և ծովախորշից հեռու ափ եյին հանում։

Այդ կազմակերպությունը շատ ամուր եր, և յերկու տարվա ընթացքում, նրա միջոցով գրականության ահագին քանակություն — «Իսկրայի», «Զարիայի» և այլ օրգանների հրատարակությունները—տարածվում եյին մեր կուսակցության այն ժամանակվա կազմակերպությունների մեջ։ Բայց, դրանով ընկերները չբավարարվեցին։ Առաջ կազմակերպվեց փոքրիկ տպարան, ձեռքի մեքենա, վորը կարող եր փոքր մեծություն ունեցող թերթիկներ տպագրել։

Թերթիկներն արտասահման ընկան Վլադիմիր Իլյիչը հիացմունքի մեջ եր և մեզ մի քանի կազմակերպչական խորհուրդներ տվեց տպարանի աշխատանքների մասին։

Մեր խումբը բաժանվում եր խմբակների. մեկ խմբակը բացառապես ընդհատակյա աշխատանքներ եր տանում.



Գաղտնի տպարանի մեքենան

Դրանից հետո հաջողվեց, յերկար աշխատանքից հետո ձեռք բերել տպագրող մեքենա, վորը կարող եր տպագրել գրելու թղթի մեծության թերթիկներ։ Այդ մեքենան, վոր աշխատանքի դրվեց 1901 թվին, շատ գրական արդյունքներ տվեց։ Յեվ յերբ մեր հրատարակած գրքույկները և

սահմանված եր աշխատանքի ու կենցաղի բացարիկ ռեժիմ։ Յերկրորդ խմբակը թուղթ եր մատակարարում. յերրորդը փոխադրելու համար զանազան նյութեր եր պատրաստում — զանազան տեսակի արկղեր։ Չորրորդը հանձնում եր գրականությունը յերկաթուղի կամ նավահանգիստ փոխադրելու

համար։ Հետո կար հատուկ մի ընկեր, վորի միջոցով կապ եյինք պահպանում կենտկոմի տեխնիքական բյուրոյի հետ, վորը ցույց էր տալիս հասցեները, վճռում և ինչքան գրականություն պետք է ուղարկել և այլն։ Կար և հատուկ մի ընկեր, վորի միջոցով Կենտկոմից ստանում եյինք նյութեր տպագրելու համար և դրամական միջոցներ։

Աշխատանքի նման բաժանումը սահմանված եր մի անգամ ընդմիշտ, և վոչ վոք չեր հետաքրքրվում, թե ինչ է անում ուրիշը։ Այդպիսի ռեժիմի շնորհիվ մեզ հաջողվեց պահպանել խիստ գաղտնապահություն։

Կուսակցության II համագումարից հետո, վորոշվեց կազմակերպել ավելի ուժեղ տպարան, վորտեղ և վորոշված եր տպագրել նաև «Իսկրան»։ Յես կանգ չեմ առնի մեր աշխատանքի մանրամասնությունների վրա, կասեմ միայն, վոր լեգալ տպարանի տիրոջ միջոցով մեզ հաջողվեց Լայպցիգից արագատիպ մեքենա դուրս բերել։ Այդ մեքենայի համար մենք վճարեցինք 2,300 ռուբլի, ավելցրինք այդ փողերը տպարանատիրոջը, վորը պիտի բերել տար մեքենան և հանձներ մեզ։ Մենք նրան ասել եյին, վոր մեքենան տանելու յենք Պարսկաստան։ Յերբ մեքենան ստացվեց, տպարանատերը վորոշեց պահել այն իրեն և փոխարեն առաջարկեց վերցնել իր հին մեքենան։ Մենք փորձեցինք սպառնալով վերցնել մեքենան, բայց վոչինչ դուրս չեկավ։ Նա սկսեց սպառնալ, թե կհայտնի վոստիկանությանը, վորովհետև նա արդեն կասկածում եր, վոր մենք մեքենան անլեգալ աշխատանքի համար ենք վերցնում։ Մեզ վոչինչ չեր մնացել անելու։ Մեքենան պահվում եր արկղի մեջ, պահեստում, վորի հասցեն մենք գիտեյինք։ **Մեր ընկերները զինվեցին, վարձեցին սայլ, սայլապանին մի տեղ փակեցին, մերոնցից մեկը դարձավ սայլապան, մյուսին ուղարկեցինք պահեստը բանալու յեվ մեզ սպասելու, իսկ մենք զիներով գնացինք պահեստ: Վորպեսզի չկասկածեին հափշտակության մասին, մենք վերցրինք մեզ ոգնելու պոստում կանգնած յերկու վոստիկանին:** Այստեղ այլ կերպ հնարավոր չեր գործել, հարկավոր եր համարձակություն։ Մեզ այդ հաջողվեց։ Յերբ իմացան, վոր մեքենան անհայտացել է — ամբողջ վոստիկանությունը վոտքի կանգնեց, բայց վոչ մի հետք չկարողացավ գտնել։ Մեր տպարանը գոյություն ունեցավ մինչև 1906 թիվը։

**Այդ գործում ընկերները հանդես եյին բերում մեծ տոկունություն, նվիրվածություն, համարձակություն, հնարագիտություն։ Մենք պարզ տեսնում եյինք, վոր բանվորական շարժման գործն անում է, վոր իզուր տեղ ուժ չենք վատնում, վոր մեր աշխատանքը վերին աստիճանի ոգտակար է։ Իսկ արտասահմանից մենք ստանում եյինք Իլյիչի խրախուսող վողջույններն ու խոսքերը։**

# Ի Ն Չ Կ Ա Ր Դ Ա Լ

**Լ. ԿՈԼՑՈՎՆԻԿՈՎԱ — «Մեր ավագ յեղբայրները, կոմյերիտականները», եջ՝ 72, գինը՝ 33 կոպ. Մոսկվա, 1927 թ.**

Պիոներներները պետք է իմանան կոմյերիտմիության աշխատանքի ու պայքարի փառավոր պատմությունը։

Այս գրքույկում, մի հին կոմյերիտական, իր շուրջն է հավաքում պիոներներին ու սկսում շատ հետաքրքիր կերպով պատմել անցած ցարական դաժան կարգերի, Հոկտեմբերյան Մեծ Հեղափոխության և նրան հաջորդող քաղաքացիական կռիվների մասին։

Այս գրքույկը կարդացող պիոների աչքի առաջով կանցնեն կոմսոմոլի զինված խմբերը, վորոնք 17 թվից մինչև 21 թիվը, նստած զրահակարգային կռվի ծխի ու բոցերի մեջ, կարմիր սվիններով ցած են շպրտում ցարական գեներալների ղեկավարությամբ հեղափոխությունը խեղդել ցանկացող հրոսակախմբերին։ Հերոսական կռիվների մեջ կոմսոմոլն կոփվում, ամրանում է։

Գրքույկի հետագա գլուխներում խոսվում է պիոներական առաջին կոլեկտիվների կազմակերպման մասին։

Բացի այս բոլորից, գրքույկում
ե
շատ պարզ կ բաղով բացատրվում է, թե ինչ խնդիրներ են կանգնած կոմսոմոլի առաջ թե գյուղում և թե քաղաքում։

Այս բոլորը պիոներները պիտի իմանան, վորպեսզի նրանք կարողանան անցնել կոմսոմոլի շարքերը, իրենց աշխատանքով ոգնեն իրենց մեծ յեղբայրներին — կոմյերիտականներին։

Վ. Գ.

**ԱՆԴՐԵՅ — «Զրույց պիոներների հետ 1905 թվի մասին» — եջ՝ 20, գինը՝ 8 կոպ. Պետհրատ, 1927 թիվ**

Չկա գոնե մի պիոներ, վորը Մեծ Հոկտեմբերի մասին չգիտենա, բայց թե ինչ տեղի ունեցավ մեզանում 1905 թվին — այդ մասին շատ պիոներներ վոչինչ չգիտեն։

Մեր ազատ աշխարհում աճում, դաստիարակվում է մեր նոր սերունդը, բայց այդ ազատությունը ձեռք է բերվել հարյուրավոր տարիների համառ կռվի ու ապստամբությունների միջոցով։ Մեծ Հոկտեմբերից առաջ, Ռուսաստանում, ամենամեծ բանվորական ապստամբությունն յեղել է 1905 թվին, վորը ճամփա յե բացել Հոկտեմբերի հաղթանակի համար։ Բանվորներն ու գյուղացիներն այդ կռվում հազարավոր զոհեր տվին, շատ արյուն թափեցին, վորպեսզի այսոր ծաղկի ու ծլի մեր նոր սերունդը։

Այդ բոլորի մասին, բանվորների ապստամբությունների մասին շատ մատչելի զրույցի ձևով գրված է այս գրքույկը։

Յուրաքանչյուր պիոներ պետք է կարդա այս գրքույկը, վորպեսզի իմանա թե ինչքան արյուն է թափվել հեղափոխության ճամփին և վրեժով ու զայրույթով լցվի դեպի անցած ու գնացած ցարական դաժան կարգերն ու ներկայիս կապիտալիստական բռնակալ աշխարհը։

**Ն. ՄՈՍԿՎԻՉՅՈՎ. — «Պիոներական կենդանի լրագրեր» պետհրատ, 1927 թ. գինը 20 կոպ.**

Մեզ մոտ պիոներական պիեսաների և կենդանի լրագրերի սով է։ Մեր կոլեկտիվները չեն իմանում ինչ բեմադրեն, դես ու դեն են ընկնում համապատասխան վորևե պիեսա ճարելու համար։ Այս գրքույկում 8 կենդանի լրագրեր կան։ Մեր կոլեկտիվները պետք է ունենան այս գրքույկը, վորը մեծ ոժանդակություն կարող է ցույց տալ նրանց աշխատանքներին։

# ՊԻՈՆԵՐԸ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՃԱԿԱՏՈՒՄ

## ԻՆՉՊԵՍ ՍՏԱՆԱԼ ՄԵԾ ԳԱԶԱՐ

*Յեթե մենք ուզում ենք մեծ տեսակի գազար ստանալ, պետք է նրա հողը լավ մշակենք։ Ամենից առաջ, գազարի հողը պիտի բահերով լավ փորել։ Փորելուց բացի, լավ կլինի, սերմը շարքերով ցանելու համար, չթով կամ փոքր գութանով (նկար 1) մի*



*Նկ. 1*

*անգամ վարել և ակոսներ պատրաստել։*

*Գազարը մոխիր շատ է սիրում։ Դրա համար էլ հարկավոր է, փորելուց առաջ, գետնի յերեսին մոխիր շաղ տալ և հետո փորել ու շուռ տալ հողը։*

*Գազարի սերմը ցանելուց առաջ պիտի ծլեցնել։ Դրա համար, գազարի մեկ չափ սերմը պիտի խառնել 3 չափ ավազի հետ, լցնել մի կավե պուտուկի մեջ և դնել մի տաք տեղ։ Մի օրվա մեջ նա կթրջվի և կուռչի։ Մի օրից հետո դուրս են հանում, քիչ չորացնում հեշտ ցանելու համար և ցանում։*



*Յեթե սերմը մեծ գազարի սերմ է, հարկավոր է ցանքսի շարքերը իրարից 8 վերշոկ հեռավորության վրա անել։ Յերբ գազարը ծլում է, շարքի միջի թույլերը պիտի քաղհանել՝ թողնելով 3 հատ, և յուրաքանչյուր յերեքը մյուսից 3 վերշոկ հեռավորության վրա թողնել։ Առաջին քաղհանից 3—4 շաբաթ հետո, հարկավոր է այդ 3-ականներից 2-ը նորից քաղհանել մի մի հատ, և ամեն մեկը մյուսից 6 վերշոկ հեռավորության վրա։ Միայն կանոնավոր շարքերով ցանված և այդպես քաղհանված գազարը մեծ բերք կտա։*

*Շատ օգտակար է, գազարը պարարտացնելու համար, հավաքել ընտանի անասունների մեզը և հուլիսի վերջերից մինչև օգոստոսի սկիզբներն, այդ հեղուկով ջրել—պարարտացնել գազարը։ Յուրաքանչյուր սաժենի վրա պիտի լցնել մի վեդրո մեզ։*



*Գազարի սերմը հարկավոր է գնել Հայգյուղկոոպից կամ վարկային ընկերություններից։ Մասնավոր սերմավաճառները մեծ տեսակի գազարի սերմ չեն կարող ունենալ։*

*Այդ սերմը Հայգյուղկոոպը հատկապես բերում է Հայաստանում տարածելու համար։*

**Ս. Մարջանյան**

---

## ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿՈԼԼԵԿՏԻՎԸ ՊԻՏԻ ՃԱԳԱՐ ՊԱՀԻ

*Մեզանում շատերն այն կարծիքի յեն, վոր ճագարի միսը չի ուտվում, վոր նա հարամ կենդանի յե և այլն։*

*Սակայն այդ այդպես չէ։ Ճագարը գյուղատնտեսական անասունների մեջ ամենաօգտակարների շարքին է պատկանում։ Ճագարի միսը սպիտակ է, շատ սննդարար, համեղ ու դյուրամարս։ Արտասահմանյան շատ ու շատ հիվանդանոցներում միայն ճագարի միս են գործածում։*

*Կան ճագարների զանազան տեսակներ (անգլիական, բելգիական, լեհական, ռուսական, տեղական և այլն)։ Ճագարը նապաստակի հետ վոչ մի առնչություն չունի։ Ճագարը մի գասի յե պատկանում, նապաստակը ուրիշ։ Նապաստակի միսը թթու յե, անհամ ու անախորժ։ Այնինչ ճագարինն ընդհակառակն է։*

*Ճագարը բացի մսից տալիս է մորթի, վորի հատը վաճառվում է 50 կոպեկից մինչև մեկ ռուբլի։ Ճագարի մազից թանգարժեք գլխարկներ և ձեռնոցներ են պատրաստում։*

*Այնպես վոր, յեթե պիոներական կոլլեկտիվը ճագար պահի, կարող է*



*Տեղական ճագար*

*մեծ օգուտ ստանալ և դրանով իր կոլլեկտիվի ֆոնդն ուժեղացնել։*

*Ճագարը խոտակեր կենդանի յէ, ինչպես օրինակ վոչխարը։ Բայց շատ է սիրում նաև գազար, կարտոֆիլ, ճակնդեղ ու գարի։*

*Ճագարը տարեկան 10—11 անգամ է ծնում և ամեն անգամին 7—14 ձագ է տալիս։*

*Յեթե այն բակում, վորտեղ պիոներները ճագարներ պիտի պահեն, թփեր կան, հարկավոր է նրանց վանդակների մեջ պահել։ Հակառակ դեպքում նրանք կկրծոտեն թփերի ցողունները։*

**Ս. ՎԱՐԴԱՆՅԱՆ**

# ՄԵՐ ԿՅԱՆՔԸ

## ՊԱՏՐԱՍՏՎՈՒՄ ԵՆՔ ԼԱԳԵՐԻՆ

### ԾՆՈՂՆԵՐԻ ՕԳՆՈՒԹՅԱՄԲ ՀԱՄԱԶԳԵՍՏՆԵՐ ՈՒՆԵՑԱՆՔ

Ընկեր «Յերզնկյանի» անվան պիոներական կոլլեկտիվը կազմակերպված է Յերևանի ցուցադրական դպրոցի կոմյերիտական բջիջին կից: Մեր կոլլեկտիվը արդեն նախապատրաստական աշխատանք է տանում լագեր գնալու համար: Անցել ենք մի շարք լագերային գիտելիքներ — շուտափույթ օգնություն, վրաններ խփել, վերքեր փաթաթել և այլն: Այդ բոլորը կատարել ենք անցյալ տարվա մեր լագերի բացերը հաշվի առնելուց հետո: Ինչ վոր սովորում ենք, աշխատում ենք զանազան մոդելների միջոցով ցուցադրել մեր ծնողներին և ընկերներին: Արդեն հարց ենք հարուցել կուսակցական և ԼԿՅԵՄ բջիջների և տեղկոմի առաջ, վոր լագեր գնալու համար մեր կոլլեկտիվին դրամական օգնություն ցույց տան: Նրանք այդ ուղղությամբ աշխատում են:

Ծնողների միջոցով պիոներների համար ձեռք ենք բերել համազգեստներ: Դրա համար հրավիրեցինք ծնողական հավաքույթ, ծնողների պահանջով նրանց պատմեցինք մեր կոլլեկտիվի աշխատանքի մասին: Հետո ընտրեցինք մի կոմիսիա, վորը 10 որվա ընթացքում պատրաստեց համազգեստները:

Ծնողները պահանջել են, վոր լագեր գնալիս անպայման հետները ունենանք բժիշկ:

Վ. Բ.

Յերևան

## ԱՆԳԼԻԱՅԻ ՊԻՈՆԵՐՆԵՐԻՆ ՆԱՄԱԿ ԳՐԵՑԻՆՔ

«Զինովյեվի» անվան կոլլեկտիվի II-րդ ողակը, յերբ իր հավաքույթներից մեկում զրույց ունեցավ միջազգային պատանեկական շարժման մասին, վորոշեց կապ պահպանել կարմիր գծից են կողմն աշխատող իրենց յեղբայր — պիոներների հետ: Մենք արդեն ողակով նամակ ենք գրել Անգլիա: Պատասխանը դեռ չենք ստացել: Սպասում ենք:

Տ. Հարությունյան

Յերևան



Յերևանի պիոներների ցույցը Միջազգային Պատանեկական 7-դ Շաբթին

## ՄԵՐ ԴՊՐՈՑՈՒՄ ԿԱԶՄԱԿԵՐՊԵԼ ԵՆՔ ԹՈՒՅԼ ԱՇԱԿԵՐՏՆԵՐԻ ԽՄԲԱԿՆԵՐ

### (ԹՈՒՅԼԵՐԻ ՏՈԿՈՍՆ ԻՋՆՈՒՄ Է)

Յերկու շաբաթ է, ինչ Յերևանի 7-ամյա № 4 դպրոցում, աշխորհուրդը, ֆորպոստը և ԼԿՅԵՄ բջիջը, մանկավարժական խորհրդի աջակցությամբ, ձեռնարկել են մի որինակելի գործի: Նրանք կազմակերպել են թույլ աշակերտների խմբակներ: Այդ խմբակները կազմակերպվել են այսպես. — դպրոցական յուրաքանչյուր խմբում, առանձին առարկաներից թույլ աշակերտներից կազմված են առանձին խմբակներ: Այդ խմբակների հետ պարապում են ուժեղ աշակերտները. ուսուցչությունն ամեն կերպ ոժանդակում, ցուցմունքներ է տալիս այդ խմբակների աշակերտներին: Ուսուցիչների տեղեկություններից յերևում է, վոր թույլ աշակերտները, այդ խմբակների կազմակերպվելուց հետո, քիչ թե շատ հառաջադիմել են:

Այսպիսով այդ խմբակներն այն արդյունքը կտան, վոր ուսումնական տարվա վերջը, մեր դպրոցում թույլերի տոկոսը համեմատաբար կպակասի:

Պետք է վողջունել այս որինակելի քայլը և պիտի հուսալ, վոր մեր բոլոր դպրոցները կհետևեն № 4 դպրոցի որինակին:

Շահզյալզյան Դ.



Մշակում են այգին

# ՄԵՐ ԿՅԱՆՔԸ

## ՊԻՈՆԵՐՆԵՐԸ ՊԵՏՔ Է ՕԺԱՆԴԱԿԵՆ ՀՈԿՏԵՄԲԵՐԻԿՆԵՐԻ ԱՇԽԱՏԱՆՔՆԵՐԻՆ

*Պիոներական կոլեկտիվներից շատերն ունեն հոկտեմբերիկների խըմբակներ։ Սակայն նրանք կանոնավոր չեն հետևում, կամ բոլորովին չեն էլ հետաքրքրվում այդ խմբակների աշխատանքներով։*

*Պիոներները հոկտեմբերիկների խըմբակների աշխատանքներին մեծ օգնություն կարող են ցույց տալ։ Այդ ուղղությամբ մեր մի քանի կոլեկտիվներում նկատվում է վորոշ աշխատանք։*

*Բերենք մի քանի օրինակներ։*

*«Զինովևի» անվան կոլեկտիվի հոկտեմբերիկների խմբակում աշխատում են 5 պիոներներ։ Նրանք ղեկավարում են «փնջերի»—օղակների աշխատանքը։ Նրանք օգնում են հոկտեմբերիկներին՝ ցերեկույթներ կազմակերպելու գործում, պատրաստելով արտասանություններ, խաղեր, յերգեր և այլն։ Բացի դրանից, նրանք հաճախ անց են կացրել խմբակի հավաքույթները։*

*«Կարմիր կաշեգործ» կոլեկտիվի հոկտեմբերիկների խմբակի աշխատանքներին մասնակցում են 2 պիոներներ։ Նրանք օգնում են հոկտեմբերիկավարին՝ զանազան խաղեր, յերգեր հոկտեմբերիկներին սովորեցնելու գործում։ Խմբակը պատրաստել է կենդանի լրագիր։ Այդ գործին մասնակցել են պիոներները, ղեկավարելով կենդանի լրագրի կազմակերպման աշխատանքը։*

*Այս օրինակները ցույց են տալիս, վոր պիոներները շատ բան կարող են անել հոկտեմբերիկների աշխատանքներին օգնելու համար։*

**Ռ. Փորսուղյան**



*Հոկտեմբերիկները «Պապն ու Շաղգամը» են խաղում*

## ՀԱՐԿԱՎՈՐ Է ՆՈՐ ԸՆԴՈՒՆՎԱԾ ՊԻՈՆԵՐԻՑ ՅԵՐԴՈՒՄ ՊԱՀԱՆՋԵԼ, ԱՊԱ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԼԾԵԼ

*Մեր կոլեկտիվում նկատվում է հետևյալ յերևույթը։ Մի պիոներ, վորը դեռ մի ամիս է, ինչ մտել է կազմակերպության մեջ, հանկարծ դառնում է օղակավարի օգնական, կամ մի ուրիշ աշխատանք է տանում։ Չգիտեմ, ընկերներն այս հարցի նկատմամբ ինչ կարծիք ունեն, սակայն յես կարծում եմ, վոր այդ շատ սխալ է։*

*Ինչու։*

*Յեթե մեկն ընդունվում է պիոներական կազմակերպության մեջ, նա պետք է 2 ամսվա ընթացքում պատրաստվի, լավ յուրացնի պիոներական օրենքներն ու սովորույթները, և հանդիսավոր յերդում տալուց հետո միայն, վոր նա համարվում է պիոներ։ Այդ ասված է մեր կազմակերպչական կառուցվածքի մեջ։*

*Մի օրինակ.—մեր V-րդ օղակի պիոներներից մեկը 3 շաբաթվա պիոներ էր և նրան վերցրին օղակավարի օգնական ընտրեցին։ Բա ես յեղավ, ուր մնաց պիոներական յերդումը, կազմակերպչական կառուցվածքը։*

**Ս.մ. Դալուճյան**

*«Արդարադատ» կոլ.*
*Յերևան*



*Թաղերի հրապարակ են պատրաստում*

## ԳՈՐԾԱՐԱՆԱՅԻՆ ԱՇԱԿԵՐՏՈՒԹՅԱՆ ԴՊՐՈՑԸ ԼԵՆԻՆԱԿԱՆՈՒՄ

Մեր յերկրի գործարանների, ֆաբրիկաների թիվն որեցոր շատանում և: Ընդարձակվում են հները, կառուցվում նորերը: Մեր աճող ու զարգացող արդյունաբերության համար, հարկավոր են իրենց գործը լավ իմացող վորակյալ բանվորներ: Մեզ հարկավոր են այնպիսի բանվորներ, վորոնք իրենց գործը լավ իմանալուց բացի, պարզ կերպով պատկերացնեյին սոցիալիստական արդյունաբերության նշանակությունը, լավ հասարակական աշխատողներ լինեյին:



Վարպետը բացատրում է



Աշխատելիս



Սղոցում է



Դազգահի առաջ

Այդպիսի բանվորներ պատրաստելու նպատակին են ծառայում գործարանային աշակերտության դպրոցները—ֆաբզավուչները:

Հայաստանի առաջին ֆաբզավուչը բացվել է Լենինականում: Դպրոցում սովորում են 65 հոգի: Սովորողների մեծ մասը պիոներներ են: Դպրոցի ԼԿՅԵՄ բջիջին կից կազմակերպված է պիոներական կոլեկտիվ:



Գրաուեպվար № 180-ր    Տիրաժ 2000    Պետհրատի 2 դ տպարան Յերևանում—502

# ՇԱՐԺԻՐ ՈՒՂԵՂԴ



*Ռեբուս № 3*



*Ռեբուս № 4*

## ՅԵ՞ՐԲ Ե ՅԵՐԿԱՐ ԼԻՆՈՒՄ

*Կայարանում, ապրանքատար գնացքը մեկ վերեվ ե գնում, մեկ իջնում ներքեվ (մանյովր ե անում)։ Ի՞նչ եք կարծում գնացքը վերեվ գնալի՞ս ե չերկար թե՞ իջնելիս։*

